

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1951 թ.

# ՊԻՈՆԵՐ



# Եկել ենք մենք

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Ողջո՜ւյն, դպրոց մեր թանկագին,
Մենք եկել ենք, եկե՜լ կրկին.
Դու մեր դիմաց
Դռներդ բա՜ց,
Եկել ենք մենք արդեն թողած՝
— Ես մեր կանաչ Ծաղկաձորը.
— Ես մեր Նորքի զով ճամբարը.
— Ես՝ Ավանը.
— Ես՝ Սևանը.
— Ես էլ՝ մեր գյուղ Հացավանը:

Վազվզեցինք անտառներում
Հավաքեցինք թիթեռ, զեռուն,
Ձուկ որսացինք,
Սար գնացինք,
Լավ-լավ գրքեր մենք կարդացինք՝
— Ես մեր կանաչ Ծաղկաձորում.
— Ես մեր Նորքի զով ճամբարում.
— Ես՝ Ավանում.
— Ես՝ Սևանում.
— Ես էլ մեր գյուղ Հացավանում:

Որ միշտ լինենք առողջ, արի,
Որ սովորենք լավ այս տարի,
Մեր սրտերում,
Երակներում
Բերել ենք ուժ, արև, ավյուն՝
— Ես մեր կանաչ Ծաղկաձորից.
— Ես մեր Նորքի զով ճամբարից.
— Ես՝ Ավանից.
— Ես՝ Սևանից.
— Ես էլ մեր գյուղ Հացավանից...








*Լենինի — Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԱՌԱՋԻՆ ԴԱՍԸ

Ֆոտո Վ. ՓԻՉԽՈՒԼՅԱՆԻ

# ՍԻՐԵԼԻ ՊԻՈՆԵՐՆԵՐ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐ



Սկսվեց նոր ուսումնական տարին: Դուք պետք է լըրջորեն ձեռնամուխ լինեք ուսման գործին: Մեր պարտիան, Սովետական կառավարությունը ձեզնից պահանջում են սովորել բարձր ցուցանիշներով, ինչպես վայել է սովետական դպրոցականին: Լավ սովորելը պատվի գործ է, լավ սովորելը ձեզնից յուրաքանչյուրից պահանջում է համառ աշխատանք և ուժեղ կամք՝ ուսման գործում եղած դժվարությունները հաղթահարելու համար: Պետք է լավ սովորել ուսման հենց առաջին օրվանից, ուսումնական տարվա բոլոր օրերին:

Դուք բոլորդ ձգտում եք դառնալ Սովետական մեծ Միության օգտակար քաղաքացիներ, ակտիվ մասնակցել կոմունիզմի կառուցման վեհ գործին: Դրա համար ամենից առաջ լավ պետք է իմանալ մայրենի լեզուն, ռուսաց լեզուն, մաթեմատիկան, միչուրինյան բիոլոգիան, մեր հերոսական ժողովրդի փառավոր պատմությունը:

Պատմության մեջ առաջին անգամ միայն մեր երկրում հաջողությամբ կիրառվում է յոթնամյա ընդհանուր պարտադիր ուսուցումը՝ գյուղերում և միջնակարգ պարտադիր կրթությունը՝ քաղաքներում: Ամեն տարի կառուցվում են բազմաթիվ նորանոր դպրոցներ, պիոներական պալատներ, սպորտային հրապարակներ: Վերջին տարիներին միայն Երևանում, ձեր աչքի առաջ կառուցվեցին դպրոցական 20 խոշոր ու լուսավոր շենք:

Բոլշևիկների պարտիան, Սովետական կառավարությունը, ժողովուրդների մեծ առաջնորդ և ուսուցիչ, մանուկների մեծ բարեկամ ընկեր Ստալինը հայրաբար հոգ են տանում ձեր նկատմամբ:

Պարտիայի ու կառավարության ջերմ հոգատարությանը պատասխանեցեք ուսման բարձր առաջադիմությամբ: Միշտ հիշեցեք, որ սովետական դպրոցականի հայրենասիրությունը և նվիրվածությունը Լենինի—Ստալինի մեծ գործին՝ պետք է արտահայտվի առաջին հերթին լավ ու գերազանց սովորելով և բարձր կարգապահությամբ:

Բարձր պահեցեք սովետական առաջավոր դպրոցի պատիվը: Սիրեցեք ձեր հարազատ դպրոցը. այնտեղ են դրվում գիտությունների տիրապետելու հիմքերը:

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստր

# ՄԵԾ ՈՒԺԸ



*Մեզ՝ գիտնականներիս երբեմն անվանում են երազողներ. և դա ճիշտ է: Գիտությունը՝ ամենահամարձակ երազանքների և ենթադրությունների բնագավառ է: Նա մեծ ուժ է: Նա մեր երկրի կյանքում հսկայական դեր է խաղում: Դրա համար էլ մեզ այժմ գլխավորապես պետք են այն գիտությունները, որոնց օգնությամբ մենք կկարողանանք կատարել կոմունիզմի կառուցման մեծագույն խնդիրը:*

*Մենք արդեն հիմա վկա ենք այդ խոշորագույն վերափոխություններին: Մեր երկիրը դրանցով հսկայական քայլեր է անում դեպի կոմունիզմ: Սովետական մարդիկ կառուցում են հազարավոր կիլոմետր երկարությամբ ջրանցքներ, հսկա էլեկտրակայաններ: Յուրացվում են տասնյակ միլիոնավոր հեկտար անջրդի հողեր և անապատներ:*

*Կոմունիզմի մեծ կառուցումները սովետական ամբողջ ժողովրդի գործն է: Մենք՝*

# ...ՈՒՆԵՐԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՌԱՆԴԻ ՊԻՈՆԵՐ:

երևանցիներս նույնպես մասնակցում ենք այդ մեծ գործին: Մեր Ջրա-էներգետիկ ինստիտուտը պատվեր է ստացել կառուցելու աշխարհի ամենախոշոր հիդրոկայանի մակետը: Դա շատ բարդ և պատվավոր պատվեր է:

Մեծ է գիտության նշանակությունը մեր օրերում, հատկապես ճշգրիտ և բնական գիտությունների:

Ես ձեզ կպատմեմ գիտության մի ճյուղի մասին, որն ավելի մոտ է ինձ՝ հիդրոէներգետիկայի մասին:

Պատկերացրեք ձեզ իմ տեղը. ենթադրեք, որ դուք արդեն մեծացել դարձել եք գիտնականներ, ուսումնասիրում եք էլեկտրականությունը: Ի՞նչ պատվավոր մասնագիտություն է մարդկանց լույս և ջերմություն տալը: Ահա դուք կանգնած եք էլեկտրակայանի ղեկավարման կետում: Միացնում եք հոսանքը և հանկարծ շատ քաղաքներ ու գյուղեր լուսավորվում են: Լույսի տակ մարդիկ աշխատում են, սովորում: Մի՞թե այդ սքանչելի չէ: Բնության մեջ շատ գաղտնիքներ և առեղծվածներ դեռ կարոտ են պարզաբանման: Այդ պատիվը, երեխանե՛ր, պատկանում է ձեզ:

Դրա համար այժմվանից՝ ուսումնական տարվա սկզբից պետք է լավ սովորեք, որպեսզի փոխարինեք մեզ՝ ավագ սերնդին: Տիրապետեցեք գիտությանը և եղեք հայտնագործողներ: Ձեր գիտական աշխատություններով հարստացրեք սովետական գիտությունը և զարդարեցեք մեր չքնաղ հայրենիքը:

ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ի. Վ.

ՀՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի իսկական անդամ, Ջրա-էներգետիկ ինստիտուտի դիրեկտոր

## ՁԵՐ ԽՆԴԻՐԸ

Քսաներորդ դարը սովորաբար անվանում են տեխնիկայի դար: Դա իսկապես այդպես է: Մեքենաներն այժմ մեր երկրում այնքան լայն տարածում են ստացել, որ չկա աշխատանքի մի ճյուղ, որտեղ նրանք չօգնեն մարդուն:

Առանձնապես մեծ թափով զարգացել է հայրենական տեխնիկան: Դա շատ ու շատ թեթևացրել է մարդկային աշխատանքը մեր երկրում: Մեր ձեռնարկություններում օր-օրի վրա ավելի շատ են մեքենայացվում աշխատանքները: Օրինակ՝ Երևանում հիմա կա ավտոմատ էլեկտրակայան, որն աշխատում է առանց մարդու օգնության: Վերջերս Մոսկվայում սկսել է գործել մի ամբողջ ավտոմատ գործարան: Աշխատանքային բոլոր պրոցեսներն այնտեղ կատարվում են մեքենաների «ձեռքերով»:

Այժմ սովետական տեխնիկայի աճման ու զարգացման լայն հնարավորություններ կան: Ես չեմ կասկածում, որ ձեզանից շատերը, միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո, կգնան սովորելու տեխնիկական բարձրագույն ուսումնական հաստատություններում: Շատերը հիմա էլ երազում են բարդ մեքենաների մասին, գործարաններում և ֆաբրիկաներում աշխատելու մասին: Բայց ես ձեզ խորհուրդ եմ տալիս, որ տեխնիկան սիրելու հետ միաժամանակ սիրեք նաև գիտությունները: Իսկապես ի՞նչ է տեխնիկան: Դա նույն մաթեմատիկան, ֆիզիկան և քիմիան է: Ուրեմն, ով երազում է մեքենա ստեղծել, ճարտարապետ և կոնստրուկտոր դառնալ, նա պետք է չծուլանա, տիրապետի գիտության հիմունքներին: Ուրեմն սովորեցեք, լավ սովորեցեք՝ ֆիզիկա, քիմիա, մաթեմատիկա, բնագիտություն և մյուս առարկաները: Այս է ձեր խնդիրը:

Ա. ԻՍԱԿՈՎ... ԻՍԱԳՈՒԼՅԱՆ

Ճարտարագետ, Ստալինյան մրցանակի լաուրեատ



# Մեր ուսուցչուհին

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

ՆԿ. ԱՆ. ՉՈՐԴԱՁՅԱՆԻ

Ինչքա՜ն բարի է մեր ուսուցչուհին,
Ինչքա՜ն լավն է նա և ընկերական,
Ասես թե լինի մեր ընկերուհին,
Այնքան սրտագին սիրում ենք նրան:

Նա այնպես է մեզ զգվում ու սիրում,
Զրուցում այնպես քնքուշ, կարեկից,
Որ հաճախ նրան մենք չենք տարբերում
Անգամ հարազատ, անուշ մայրիկից:

Մերթ բարկանում է մայրիկի նման,
Պայծառ հայացքը ամպում, խոժոռում,
Բայց և ժպտում է չանցած մի վայրկյան,
Ինչպես արևն է ժպտում ամպերում:

Նրան լսելով դու չես հագենա,
Ամեն մի խոսքը մի գանձ է, գոհար.
Ասես անսպառ աղբյուր լինի նա
Գիտության ծարավ մեր սրտի համար:

## ՈՂՋՈՒՅՆ ՔԵԶ ԴՊՐՈՑ

Ամառն անցկացրինք մենք նամբարներում,
Ծաղիկների մեջ, զով անտառներում.
Ծանոթ էին մեզ ամեն թուփ ու քար,
Գետ, բլուր, առվակ, կանաչ ձոր ու սար:

Կոփվել ենք այնտեղ հոգով խանդավառ,
Սովորել պես-պես ուրախ երգ ու պար,
Վճիտ ջրերում անհոգ լողացել,
Զրույցներ լսել, խաղեր խաղացել:

Մեր կոլխոզային դաշտերում անծայր
Հավաքել ենք մենք հասկեր ոսկեվառ,
Արշավի ելել պիոներական...
Այսպես է անցել մեր ժիր առօրյան:

Այժմ նամբարին հրաժեշտ տալով
Քո գիրկն ենք գալիս առույգ, խնդալով,
Քեզ նվերներ ենք բերել մենք կրկին,
Քեզ հազար ողջույն, դպրո՛ց թանկագին:

ՌՈԲԵՐՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(Երևանի № 51 դպրոցի աշակերտ)

## ՀԱՅՐԵՆԻՔ

Հայրենիք իմ արևաշող,
Զուգված շքեղ զարդերով,
Դու աշխարհի ապագայի
Հզոր հիմքն ես ապահով:

Քո ջինջ, կապույտ երկնքի տակ
Մարդն ապրում է երջանիկ.
Ողջ աշխարհում՝ խաղաղության՝
Պատվանդանն ես, հայրենի՛ք:

ՌՈԲԵՐՏ ՄԱՐԿՈՍՅԱՆ
(Գյուլագարակի մանկական
հանգստի տան հանգստացող)

# ԵՍ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՍ

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

1.

Վրա հասավ հանդիսավոր օրը՝ նոյեմբերի վեցը։ Վահիկը երեկոյան մոր մոտից չհեռացավ, մինչև որ մայրը հարթուկեց սպիտակ ու մաքուր վերնաշապիկը, շալվարը և մետաքսի նոր վզկապը։ Այդ բոլորը հիմա դրված էին մահճակալի մոտի աթոռին։ Վահիկը նայում էր նոր համազգեստին և իրեն պատկերացնում նրանով՝ կարմիր վզկապը կապած ու նշանը կրծքին...



Սուրիկը երազներ էր տեսնում։ Տեսնում էր թե ինչպես մոռացել է հանդիսավոր խոստման տեքստը, իսկ ընկեր Վազգենն ու բոլոր տղաներն այնպիսի կշտամբանքով են նայում իրեն, որ ինքը հանկարծ սկսում է գլորվել ինչ-որ անդունդ։ Նա ընկնում է ավելի ու ավելի խորը, իսկ տղաները շարունակում են նայել իրեն։ Մեկ էլ տեսնում է, թե ինչպես մոտենում է հեռավոր երկրներ գնացող մի մեծ նավի, բայց իրեն չեն ուզում վերցնել։ Ինքը պատվի է առնում։ Նավապետն ուշադիր նայում է վզկապին, պիոներական նշանին ու հանկարծ համաձայնում է Սուրիկին նշանակել իր օգնականը...

Միհրանը երկար ժամանակ քնել չէր կարողանում։ Նա պատկերացնում էր, թե ինչպես հանդիպում է սովետական այն նավաստուն, որին տեսել էր դեռ Ֆրանսիայում եղած ժամանակ։ Նավաստին նորից թփթփացնում է նրա մեջքին և ասում է. «Կեցցե՛ս, Միհրան, կեցցե՛ս, պիոներ»։

Մյուս տղաներն էլ պակաս չեն հուզվում...

2.

Սկսվեց առաջին դասը։ Դասարանում արտակարգ լռություն էր տիրում, իսկ տղաներն ավելի լավ էին պատասխանում, քան թե առաջ։ Ոչ ոք ոչ մի բառ չէր ասել պիոներ ընդունվելու մասին, բայց ամեն ինչում



հանդիսավորություն էր զգացվում։ Դասի վերջում Ասյա Աբրամովնան ասաց.

— Դասերից հետո տուն կգնաք, կնաճաշեք, իսկ ժամը երեքին մոտ կհավաքվեք դպրոցում։ Շարքով կգնանք Լենինի հրապարակ։ Այնտեղ կկայանա ընկեր Միկոյանի անվան ջոկատի հավաքույթը։ Այդ

հավաքույթում ձեզ պիոներական շարքերը կընդունեն։

Դասարանն աղմկեց։ Խոսում էին բոլորը միասին և ոչ մի բան հնարավոր չէր հասկանալ։ Հանկարծ Սուրիկը բարձրաձայն ու որոշ անհանգստությամբ հարցրեց․

— Այսօր բոլորի՞ն կընդունեն։

— Բոլոր նրանց, ով լավ է սովորում,— պատասխանեց Ասյա Աբրամովնան։ Տղաներն ակամա շուռ եկան Աշոտի կողմը։ Աշոտը շփոթվեց, բայց ուսուցչուհին օգնության հասավ։ Նա ասաց․

— Աշոտն էլ է սկսել լավ սովորել․ ուրեմն բոլորին էլ կընդունենք։

Դասամիջոցներին ու դասերից հետո խոսակցությունը միմիայն պիոներ ընդունվելու մասին էր։ Տղաներն իրար հարցնում էին․

— Դու կանոնավոր արտագրե՞լ ես հանդիսավոր խոստումը։

— Իսկ քո վզկապը հարթուկա՞ծ է։

— Հետաքրքիր է, Լենինի հրապարակում անցորդներ չե՞ն հավաքվի։

3.

Դպրոց եկան նույնիսկ ժամը երեքից առաջ։ Շուտով հավաքվեց նաև ընկեր Միկոյանի անվան ամբողջ ջոկատը։ Ե՛վ երրորդ, և՛ վեցերորդ դասարանների տղաներն սպիտակ վերնաշապիկներ ու սև շալվարներ էին հագել․ միայն թե՝ վեցերորդ դասարանցիները վզկապներով էին, իսկ փոքրերը՝ ոչ։

Ընկեր Բաբկենը դրոշը, թմբուկն ու շեփորը դուրս բերեց բակ։ Շարվեցին։ Առջևում կանգնեց Բաբկենը։ Նրանից հետո՝ դրոշակակիրը, թմբկահարն ու շեփորահարը։ Ապա՝ կանոնավոր շարքերով, չորս-չորս՝ վեցերորդ դասարանի պիոներները։ Երրորդ դասարանցիների շարասյունը գլխավորում էր ընկեր Վազգենը։

Շարասյունը դպրոցից դուրս եկավ թմբուկի համաչափ զարկերի տակ։ Տղաները նկատեցին, որ իրենց շարքի կողքով, մայթով գնում են Ասյա Աբրամովնան և դպրոցի դիրեկտոր ընկեր Դանելյանը։

Տղաներին թվում էր, թե բոլոր մարդիկ իրենց հետ միասին ուրախ են ու ժպտում են։ Նույնիսկ արևը, որ ուշ աշնան այդ օրերին հազվադեպ էր երևում, հիմա պայծառ լուսավորում է ու կարծես թե նույնպես ժպտում է։ Փողոցի անցորդները հաճախ կանգ էին առնում ու հայացքներով ուղեկցում երեխաներին․ իսկ խաչմերուկում կանգնած միլիցիոները շերտավոր փայտը վեր բարձրացրեց ու բոլոր ավտոմեքենաները կանգնեցրեց, մինչև որ շարասյունն անցավ։

— Հո՛ւխ,— չկարողացավ հուզմունքը զսպել Վահիկը, երբ հանդիսավոր քայլով ոտք դրին ասֆալտապատ հրապարակ։ Շարվեցին «П» տառի ձևով։ Դեմքով դեպի Լենինի արձանը կանգնեցին երրորդ դասարանի տղաները։ Նրանց աջ ու ձախ կողմում՝ վեցերորդ դասարանցիները։ Կենտրոն դուրս եկան՝ դրոշակակիրը, թմբկահարը, շեփորահարը, ընկեր Վազգենը, ընկեր Բաբկենը, Ասյա Աբրամովնան ու դիրեկտոր Դանելյանը։

— Նայի՛ր,— ուսով Գագիկին հրելով ու հրապարակի մի կողմը ցույց տալով ասաց Արմենը։

Այնտեղ սկսել էր հավաքվել ժողովուրդը։ Վահիկը նկատեց Կարոյին, որը թևանցուկ էր արել մորը։ Այնտեղ էին նաև Ռուբիկի հայրը, Սուրիկի մայրը, մյուս տղաների մայրերն ու հայրերը։ Նրանք եկել էին տեսնելու, թե իրենց տղաներն ինչպես են պիոներ ընդունվելու․ իսկ տղաները, հանդիսավորությունից և տոնականությունից հուզված, աշխատում էին կարգի բերել իրենց ու կանգնել հպարտ։ Բոլորի սրտում ինչ-որ մի տեսակ թեթևություն կար։

Հանկարծ տղաները լսեցին ջոկատի խորհրդի նախագահ Հայկի բարձր ձայնը․

— Ուշադրությո՜ւն, ընկեր Միկոյանի անվան ջոկատի հավաքույթը համարում եմ բացված...

Երբ օղակավարները վերջացրին զեկույցները Հայկը շարունակեց․

— Այսօրվա հավաքույթում երրորդ «ա» դասարանի աշակերտներին պիոներական կազմակերպության շարքերն ենք ընդունելու։

Ապա նա սկսեց կարդալ ընդունվողների ցուցակը։ Ամեն մեկը պատասխանում էր՝

«Այստեղ եմ» կամ «Ես եմ»: Երբ կարդաց բոլորի անունները, բարձրաձայն ավելացրեց.

— Պատրաստվել հանդիսավոր խոստմանը:

Թմբկահարը թմբուկ զարկեց, իսկ շեփորահարը զիլ փչեց՝ «Ուշադրությո՜ւն... Բոլորդ լսեցե՜ք»: Թմբուկի և շեփորի ձայնը կտրվեց միանգամից: Հանդես եկավ ջոկատավար ընկեր Վազգենը: Մի պահ սպասելուց հետո, նա կարդաց.

— Պետրոսյան Սուրիկ,— բարձր ձայնով կանչեց ընկեր Վազգենը:

Սուրիկը մի քիչ շփոթված, բայց գլուխը բարձր, դուրս եկավ կենտրոն: Ընկեր Վազգենը թղթապանակից հանեց մի թերթ թուղթ, որի վրա Սուրիկը գրել էր հանդիսավոր խոստումը և մեկնեց նրան ինքնահոս գրչի հետ միասին: Սուրիկը դողացող ձեռքով ստորագրեց՝ «Սուրիկ Պետրոսյան»:

Այդ ժամանակ մի այնպիսի բան կատարվեց, որ ոչ ոք չէր սպասում: Սուրիկը դեմքով դարձավ Լենինի արձանի կողմն ու ասաց.

— Խոստանում եմ, ընկե՛ր Լենին, լինել այնպիսին, ինչպիսին դուք էիք, ինչպիսին ընկեր Ստալինն է...

Ապա նա մոտեցավ դրոշակակրին, մի ոտքով ծնկի եկավ ու համբուրեց դրոշի եզրը: Բոլոր տղաները և նույնիսկ հրապարակում կանգնած մարդիկ ծափահարեցին: Սուրիկի դեմքը լուրջ էր: Նա հաստատ քայլերով գնաց իր տեղը: Բոլորն ստորագրեցին իրենց ձեռքով գրած հանդիսավոր խոստման թերթիկները: Ապա վեցերորդ դասարանի պիոներներից ամեն մեկը մոտեցավ երրորդ



— Ես, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության պատանի պիոներս...

Երրորդ դասարանի տղաները նրա ետևից խմբով կրկնեցին.

— Ես, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության պատանի պիոներս...

Ընկեր Վազգենը նախադասություն նախադասության ետևից կարդաց հանդիսավոր խոստումը, իսկ տղաները կրկնեցին:

դասարանի մի աշակերտի և կապեց կարմիր վզկապն ու մեկնեց պատանի պիոների կրծքանշանը:

Դրանից հետո ընկեր Վազգենը պատվի առնելով ասաց.

— Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ։

— Մի՛շտ պատրաստ,— առույգ պատասխանեցին տղաները և կյանքում առաջին անգամ, պիոներական պատվի առան։

Այժմ շարքում առանց կարմիր վզկապի ոչ մի տղա չկար։

4.

Պիոներական երկու ջոկատ շարվեցին այնպես, ինչպես եկել էին և թմբուկի ու շեփորի ձայնի ներքո քայլեցին։

Կարելի է կարծել, թե շատ քիչ բան փոխվեց. եկան առանց վզկապների, իսկ հիմա գնում են վզկապներով։ Բայց մի՞թե այժմ գնում են նույն տղաները. ո՛չ։ Այժմ գնում են պատանի պիոներները, պատանի լենինյանները։ Իզուր չէր, որ նրանք այդպե՞ս պատրաստվում էին այդ հանդիսավոր օրվան, իզուր չէր, որ այդքա՞ն անհամբեր սպասում էին պիոներ ընդունվելուն։ Ամեն մեկն այժմ կարմիր վզկապ ունի՝ արյան գույնի դրոշի մի մասնիկը։ Այն արյան, որ թափել են լավագույն մարդիկ, բոլորի երջանկության, հենց այս տղաների երջանկության համար։

Վահիկն ու Սուրիկը, Համիկն ու Արմենը, Միհրանը, Աշոտն ու Գագիկը, երրորդ «ա» դասարանի մյուս բոլոր տղաներն այժմ արդեն Սովետական Միության պատանի պիոներների մարտական կազմակերպության անդամներ են։ Նրանք այսօր երդվեցին առանց ուժերը խնայելու պայքարել մինչև վերջնական հաղթանակ, ամբողջ իրենց կյանքը նվիրել Լենինի—Ստալինի մեծ գործին։

# ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Օգոստոսի երեսունմեկն էր։ Անահիտի մայրը վերադարձավ կարի գործարանից, լվացվեց, հագուստը փոխեց ու դուրս եկավ տանից։

— Վարդանո՛ւշ քույրիկ, գնում եմ մանկապարտեզից Անահիտին բերեմ, էդիկս բակում խաղում է, խնդրում եմ ուշադրություն դարձնես մինչև վերադառնամ,— ասաց Սիրանուշն իր հարևանուհուն։

Սիրանուշը գնում էր փողոցով ու մտածում՝ «Չէ՞ որ այսօր Անահիտի մանկապարտեզ գնալու վերջին օրն է, իսկ վաղը առաջին անգամ գնալու է դպրոց»։ Քիչ հետո նա մտավ մանկապարտեզի վարիչի փոքրիկ առանձնասենյակը։

Մանկապարտեզի վարիչը՝ Մարիամը մի խումբ երեխաների հետ զրուցում էր։

— Ուրեմն այդպես, սիրելի երեխաներ,— ասաց նա,— վաղվանից դուք էլ մանկապարտեզ չեք գալու, դպրոցն է սպասում ձեզ։

Մանուկներից ոմանք ուրախացան, ոմանց դեմքերին էլ կարծես մի փոքր տխրություն իջավ։ Փոքրիկ Անահիտն իր մոր ներկայությունից համարձակություն ստացած ասաց.

— Ընկե՛ր Մարիամ, չե՞նք կարող մանկապարտեզ էլ գալ, դպրոց էլ գնալ...

— Ո՛չ, Անահի՛տ ջան,— ժպիտը դեմքին պատասխանեց ընկեր Մարիամը,— այդպես չի կարելի։ Դու արդեն մեծ ես, դպրոց պիտի գնաս, իսկ քո փոխարեն մանկապարտեզ կգա քո փոքրիկ եղբայրը՝ էդիկը։

— Ընկե՛ր Մարիամ, հենց հիմա գնանք դպրոց,— ասաց Գուրգենը, մաքուր վերնաշապիկի փայլուն կոճակների հետ խաղալով։

— Վաղը կգնաք. նոր ուսումնական տարին սկսվում է վաղվանից՝ սեպտեմբերի մեկից։ Դուք, սիրելի երեխանե՛ր, մանկապարտեզում շատ բան սովորեցիք։ Ձեզանից մի քանիսը նույնիսկ կարդալ գիտեն, մի քանիսը լավ երգում են, պարում, նկարում, արտասանում. դպրոցում էլ օրինակելի կլինեք, լավ կսովորեք։

Երբ երեխաներն իրենց հարազատների հետ դուրս եկան մանկապարտեզի բակից,



ընկեր Մարիամը մի պահ կանգ առավ իր կաբինետի պատին փակցրած՝ երեխաների նկարների առաջ: Ակնոցները դրեց աչքերին ու նայեց: Այդ երեխաներից շատ շատերը ավարտել են միջնակարգ դպրոցը, համալսարան են գնում, ծառայում են Սովետական Բանակում: Նրա սաներից մեկն էլ տանկիստ է, հաճախ նամակներ է գրում նրան: Ահա նա՝ տանկիստի հագուստով նկարված: Այդ նկարը դրված է սեղանի վրա՝ գեղեցիկ շրջանակի մեջ:

Սիրանուշը շնորհակալություն հայտնեց մանկապարտեզի աշխատակիցներին՝ իր աղջկան լավ դաստիարակելու համար:

Մայր ու աղջիկ դուրս եկան մանկապարտեզի բակից և խառնվեցին փողոցի լայն մայրով անցնող մարդկանց:

— Մայրի՛կ, էլ մանկապարտեզ չե՞մ գալու:

— Իհարկե՝ ո՛չ, Անահի՛տ ջան, դու արդեն մեծ ես:

— Ինչքա՞ն շուտ մեծացա...

Անահիտը ժրաջան թիթեռի պես թռչկոտում էր այս ու այն կողմ: Գնում էր խոհանոց, լվացվում, մազերն էր սանրում: Նոր ծաղկավոր զգեստը մի քանի անգամ հագավ ու հանեց: Դպրոցական պայուսակը թևի տակ դրած մոտեցավ իր եղբորը:

— Էդի՛կ, դու էլ շուտով մանկապարտեզ ես գնալու, այնտեղ խելոք կմնաս, չարություն չանես:

— Իսկ դու չե՞ս գալու մանկապարտեզ:

— Ո՛չ, ես արդեն մեծ եմ, դպրոց եմ գնալու:

Անահիտը պայուսակից հանեց այբբենարանը, դրեց սեղանին, թերթիկները մեկիկ-մեկիկ շուռ տվեց, ապա կանգ առավ, նայեց Լենինի և Ստալինի գեղեցիկ նկարներին և ասաց.

— Տե՛ս, էդի՛կ. սա Լենին պապին է, իսկ սա՝ Ստալին պապին:

— Ես էլ եմ ճանաչում Լենին պապիկին ու Ստալին պապիկին...

Այնուհետև ամբողջ օրը Անահիտը դպրոցի մասին էր խոսում:

— Ես դպրոցում լավ կսովորեմ ու մեծ-մեծ հինգեր կբերեմ տուն, ինչպես քեռի Արտաշի տղա Սուրիկը:

— Ինչքա՞ն մեծ,— ուրախ դեմքով ասաց Անահիտի հայրը և գրկեց աղջկան ու սեղմեց կրծքին:

Անահիտը ձեռքերով շրջան կազմեց և ասաց.

— Այ, այսքան, շա՜տ, շա՜տ մեծ...

Նա իր սիրելի տիկնիկին գրկեց, փաղաքշեց և ասաց.

— Տիկնի՛կ ջան, առավոտյան դպրոց եմ գնալու, քեզ հետ քիչ ժամանակ կունենամ խաղալու, չտխրես, հա՞:

Ապա նոր հագուստը հանեց, դրեց աթոռի վրա ու մտավ անկողին:

Նա մի քանի անգամ արթնացավ... Տան մոտով անցնող հերթապահ տրամվայի զանգի ձայնը նրան թվացել էր դպրոցի զանգը և նա կարծել էր, թե ինքը դասից ուշացել է:

Լուռ ու խաղաղ գիշեր էր: Քնել էին տանեցիները, անուշիկ քնով քնել էր նաև Անահիտը՝ վաղվա դպրոցականը:



# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՖԵՍՏԻՎԱԼԸ

Աշխարհում դեռ ոչ մի անգամ երկնքում չէր ճախրել աղավնիների այդպիսի մեծ երամ: Թափահարելով իրենց սպիտակ թևերը երկնքի կապույտի մեջ բարձր-բարձր ճախրում էին հազարավոր աղավնիներ: Այդ աղավնիները բաց էին թողել երիտասարդության և ուսանողների համաշխարհային երրորդ ֆեստիվալի տասնյակ հազարավոր մասնակիցները, որոնք աշխարհի 104 երկրներից հավաքվել էին Բեռլին: Սպիտակ աղավնին խաղաղության խորհրդանիշն է, խաղաղության թռչունը: Բաց թողնելով աղավնիների այդ հսկայական երամը, ֆեստիվալի մասնակիցները՝ աշխարհի միլիոնավոր երիտասարդության ներկայացուցիչները, ի պատասխան պատերազմի հրձիգների կայի և Ալբանիայի, Չինաստանի ու Սովետական Միության, Եգիպտոսի և Հունաստանի, Ինդոնեզիայի և Ավստրալիայի, բոլոր երկրների դելեգատներն իրենց շարասյուների առջևից տանում էին մեծ Ստալինի պորտրետ...

Երբ ստադիոնով անցնում էր սովետական երիտասարդության դելեգացիան, ավելի քան 80 հազար հանդիսատեսների շուրթերից հնչեց սրտաբուխ ուռա ի պատիվ Մեծ Ստալինի, ի պատիվ սովետական հերոս ժողովրդի:

— Ստալի՜ն,— այս նվիրական անունն էր ֆեստիվալի բոլոր մասնակիցների շուրթերին, որովհետև նրանք բոլորը գիտեն, որ խաղաղության գործն ան-



Ցույց Մարքսի-էնգելսի հրապարակում: Նկարում՝ Արևմտյան Գերմանիայի և արևմտյան Բեռլինի 45 հազար պատանիների ու աղջիկների շարքերը հրապարակով անցնելիս:

նենգ պլանների, ասում էին՝ մենք սիրում ենք խաղաղությունը, մենք չենք ուզում պատերազմել, մենք ցանկանում ենք, որ աշխարհի վրա ճախրեն ոչ թե «թռչող բերդերը» և մահ սփռեն, այլ խաղաղության սպիտակ աղավնիները...

Տոնականորեն էր զարդարված այդ օրերին Բեռլինը: Դրոշնե՜ր... անթիվ անհամար դրոշներ էին ծփում շենքերի ճակատներին, «խաղաղություն և բարեկամություն» բառերն էին շողշողում բազմաթիվ լեզուներով գրված պլակատների վրա:

Օգոստոսի 5-ին Բեռլինի Ուլբրիխտի անվան ստադիոնում տեղի ունեցավ ֆեստիվալի մասնակիցների շքերթը: Կորեական Դեմոկրատական Ռեսպուբլի-



պարտելի է, քանի որ այն պաշտպանում է աշխարհի ամենահզոր ու իմաստուն մարդը՝ մեծ Ստալինը:

Ֆեստիվալի մասնակիցներն ամեն տեղ սիրով ու ջերմությամբ էին դիմավորում սովետական երիտասարդության ներկայացուցիչներին, ծաղկեփնջեր մատուցում նրանց և միմյանց հետ նամակներ փոխանակում:

Բեռլինի Տրեպտով պարկում կանգնած է սովետական ազատարար մարտիկների հիշատակին կառուցված հուշարձանը: Դա մի վիթխարի արձան է: Կանգնած է սովետական զինվորը մի ձեռքում սուրը, մյուսով գրկած մի մանկան: Սովետական զինվորն ազատարար է, նա սուրը ձեռքում թույլ չի տա, որ



Վյետնամի պիոներներ՝ Տանը և Խիենը զրուցում են Մոսկվայի 232-րդ դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ Տոլյա Սոլդատովի հետ:

այլևս ռումբեր ու գնդակներ տեղան մանուկների վրա:

Եվ աՀա Հավաքվելով ֆեստիվալի, աշխարհի տարբեր ծայրերից եկած տարբեր գույնի ու տարազի Հազարավոր երիտասարդներ մոտենում են այդ Հուշարձանին և թարմ ծաղիկներ դնում նրա պատվանդանին. ծաղիկների մի Հսկայական բլուր է գոյանում այնտեղ:

Օգոստոսի 6-ին Ուլբրիխտի անվան ստադիոնում տեղի ունեցավ ուսանողության Համաշխարհային ամառային խաղերի բացումը: Աշխարհի տարբեր երկրներից եկած ուսանող սպորտսմենները մրցում էին միմյանց Հետ: Ամառային ուսանողական այդ մրցումները ցույց տվին, թե ինչպիսի՜ մեծ նվաճումների են Հասել ժողովրդական դեմոկրատիայի երկրների, Չինաստանի երիտասարդները: Փայլուն էր սովետական սպորտսմենների Հաղթանակը. նրանցից 158 Հոգի ոսկե մեդալներ ստացան: Փայլուն Հաջողությունների Հասան նաև սովետական երիտասարդ արվեստագետները: Նրանք արվեստի գրեթե բոլոր ճյուղերում ստացան առաջին մրցանակները: Կոմպոզիտոր Տուլիկովի «Սովետական Երիտասարդության քայլերգը» ֆեստիվալի լավագույն երգերի կոնկուրսում նվաճեց առաջին տեղը: Առաջին մրցանակներ ստացան նաև Լենինգրադի երիտասարդ բանվորների և Ուրալի երիտասարդական երգեցիկ խմբերը: Ժողովրդական գործիքների վրա կատարելու Համար առաջին մրցանակ ստացավ Խ. Ավետիսյանը, փողային գործիքների գծով Ռ. Հովհաննիսյանը, Աբաջյանը և ուրիշները:

Բեռլինի ժողովրդական պալատում տեղի ունեցավ խաղաղության Համար պայքարող երիտասարդ մարտիկների Հանդիպում: Այստեղ խանդավառ ելույթներ ունեցան շատ երկրների երիտասարդ մարդիկ:

— Խոսքը տրվում է Բելգիայի պատվիրակ Ֆրանսուա Բրանրոբին,— Հայտարարում է նախագահը...

Հանդիսականները սպասում են. ո՞ւր է դելեգատը: Եվ աՀա ամբիոնին է մոտենում մի երեխա, կրծքին պիոներական փողկապ:

Բոլորը ծափերով են դիմավորում նրան:

— Մենք, բելգիական երեխաներս, չենք ուզում որբանալ, մենք չենք ուզում, որ մեր Հայրերը սպանվեն պատերազմում... — ասում է նա Հուզված ձայնով:

— Մենք քեզ Հետ ենք, Ֆրանսուա՜...— այս են ասում Հանդիպման մասնակցողների որոտընդոստ ծափերը...

Այո, Ֆրանսուայի Հետ է ամբողջ աշխարհի առաջավոր երիտասարդությունը, նրա Հետ են սովետական մարդիկ և նրանք թույլ չեն տա, որ Ֆրանսուան՝ շեկ մազերով, վառվռուն աչքերով այդ մանուկը որբանա...



Չինական երիտասարդների տված Համերգին ներկա էին մի քանի Հազար գերմանացի պատանիներ ու աղջիկներ: Նկարում՝ Գերմանիայի դպրոցականները կրծքանշաններ են նվիրում Համերգի մասնակիցներին:

Պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգները ամեն կերպ աշխատում էին խափանել փեստիվալը, թույլ չտալ, որ աշխարհի երիտասարդությունը կազմակերպի խաղաղության այդ մեծ ցույցը: Նրանք ոստիկանական հետապնդման էին ենթարկում փեստիվալի դելեգատներին, աշխատում էին փակել նրանց ճամփան դեպի Բեռլին: Ամերիկացիների թելադրանքով բելգիական կառավարությունը թույլ չտվեց, որպեսզի ֆրանսիական խիզախ հայրենասեր Ռայմոնդա Դյենը, նա, որ իր մարմնով փակել էր դեպի Վյետնամ ուղեվորվող ռազմական գնացքը, հասնի Բեռլին: Նրանք կես ճանապարհից Փարիզ վերադարձրին Ռայմոնդա Դյենին, բայց խիզախ ֆրանսուհին չընկճվեց: Փարիզից նա լեհական ինքնաթիռ նստեց և հասավ Բեռլին...

— Ռայմոնդան մեզ հետ է...,—այս լուրը բերնեբերան անցավ փեստիվալում...

Ամերիկացիները թույլ չէին տալիս, որ Արևմտյան Գերմանիայի երիտասարդությունը մասնակցի փեստիվալին: 250 գերմանացի աղջիկներ ու տղաներ ուղևորվում էին փեստիվալ: Հանկարծ նրանց վրա հարձակվեցին 80 ոստիկան, պատանիներից մի քանիսը ծանր վիրավորվեցին: Շատերին ձերբակալեցին: Նրանց շուտով պետք է դատեն:

Բայց այս ամենը չկարողացան փակել խաղաղության մարտիկների ճանապարհը:

Օգոստոսի 5-ից մինչև 19-ը Բեռլինը ցնծում էր երիտասարդական խրոխտ քայլերից... Աշխարհի երիտասարդությունն իր միասնական կամքն էր արտահայտում, երդվում էր պայքարելու հանուն խաղաղության, հանուն լավագույն ապագայի: Նրանց բոլորի շուրթերից հնչում էր մի նվիրական անուն.

— ՍՏԱԼԻՆ...

Վ. ԴԱՎԹՅԱՆ

# ԶՈՅԱ

*ՏՅՈՒ ՍՈՆ ՎՈՆ*

(Կորեացի բանաստեղծ)

Փոքրիկ մի քույր ունեի՝
Անունը Նե Օկ.
Առվի կարկաչ էր նրա
Ծիծաղը անհոգ:

Մեծ շենքի մոտ մի տիկնիկ
Նա տեսավ ընկած,
Խոշոր, փայլուն աչքերով,
ԱՄՆ-ում պատրաստված:

Նա ձեռքից բաց չէր թողնում
Տիկնիկը սիրուն.
Խաղաց, խաղաց... և հանկարծ
Լսվեց մի պայթյուն:

Շրթունքներով կիսաբաց
Քույրս վայր ընկավ,
Նույնիսկ «մայրիկ» նա կանչել
Չկարողացավ...

Սպայական տան առաջ
Տիկնիկը պայթեց,
Ու յանկիներն այդ ժամին
Քեֆ ունեին մեծ...

Հրդեհեցի գիշերով
Տունն սպայական,
Ու ողջ շենքը կլանեց
Բոցն արդարության:

Իմ ձեռքերով բորբոքած
Հրդեհից այդ վառ
Ցերեկվա պես լուսացավ
Գիշերը խավար:

Ինձ բռնեցին, տանջեցին.
— Ի՞նչ է անունդ:
— Զոյա:
— Ովքե՞ր են ձերոնք:
— Ողջ ժողովուրդը:

Երբ իմացան՝ ով եմ ես,
Նրանք իմ մեջքին
Շիկացած սուր երկաթով
«Զոյա» գրեցին:

Եվ աչքերս կապեցին,
Կախելու տարան,
Բայց ինձ փրկեց ջոկատը
Պարտիզանական:

Այդ օրվանից բոլորն ինձ
Կոչեցին Զոյա.
Ավելի թանկ, լավ անուն
Աշխարհում չկա՛:

Փեստիվալի եմ անա
Ես ձեզ հետ եկել,
Թեև նոր է տասներեք
Տարիս լրացել:

Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ




Դ. ԳԱՋԱՋՅԱՆ                    Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Գյուղի ակումբում կոլխոզի ընդհանուր ժողով էր։ Քննարկում էին նոր հողերի յուրացման հարցը։ Ամբիոնի մոտ էր տրակտորային բրիգադայի բրիգադիր Արտաշեսը։

— Մեր գյուղի շրջապատում շատ են քարքարոտներն ու մացառոտները,— ասում էր նա.— այդ հողերը հարկավոր է մաքրել, վարել ու տեղը ցորեն ցանել... Այս է պահանջում մեր պարտիան, մեր կառավարությունը։ Մեր բրիգադան խոսք է տալիս այս գարնանը հարյուր հեկտար վարել ու ցանել...

— Շա՜տ է,— արձագանքեց դահլիճը։

— Քարքարո՜տ է...

Դահլիճում մի պահ լռություն տիրեց։

— Հեշտ բան չէ, ընկերնե՛ր,— լռությունը խզեց Արտաշեսը.— բայց բոլորս միասին կարող ենք այդ անել...

Եվ կոլխոզի ընդհանուր ժողովը որոշեց գյուղի քարքարոտներից ու մացառոտներից հարյուր հեկտար վարել ու ցորեն ցանել։

Նույն երեկոյան պիոներական դրուժինայի խորհրդի նախագահ Աշոտիկն ու իր ընկերներն իմացան ժողովի որոշման մասին։

— Տղե՛րք,— ասաց Գուրգենը,— եկեք առաջինը մենք սկսենք քարքարոտը մաքրել։

— Ինչպե՞ս...—զարմացավ Սեդան։

— Շատ պարզ,— բացատրեց Աշոտիկը։— Հիմա արձակուրդ է, չէ՞... Հենց վաղվանից էլ սկսենք...

— Մինչև որ կոլխոզնիկները դաշտ դուրս գան, մենք մի մե՜ծ տարածություն մաքրած կլինենք,— ոգևորվեց Հակոբը։

Պիոներներն իրենց մտադրության մասին հայտնեցին ավագ ջոկատավար Վռամին։ Վռամն ուրախությունից Աշոտիկին գրկեց ու կրծքին սեղմեց։

— Ա՛յ թե լավ կլինի հա՜,— բացագանչեց նա։

Առավոտյան դեռ արևը չծագած դրուժինան ընկեր Վռամի ղեկավարությամբ քայլեց դեպի քարքարոտը։ Կոլխոզնիկները կարծում էին, թե պիոներներն ինչ-որ մի տեղ էքսկուրսիա են գնում։ Միայն կոմսոմոլի կոմիտեի քարտուղար տրակտորիստ Սուրենը գիտեր պիոներների այդ խորհրդավոր էքսկուրսիայի նպատակը։

Ճանապարհին երեխաները վիճում էին․

— Ամենաշատ քարը ես եմ հավաքելու,— ասում էր Գուրգենը։

— Գլուխդ մի՛ գովիր, դու Գեղամին չես կարող հասնել,— զգուշացնում էր Սեդան։

— Չե՞ս հիշում, անցյալ տարի ծառերի սերմեր հավաքելիս առաջին տեղը Գեղամը բռնեց,— հիշեցրեց Մարիամը։

— Անցյալ տարի՜... Հիմա կաշխատենք ու կտեսնենք,— պնդեց Գուրգենը։

Քարքարոտ հասնելով պիոներները ջոկատ առ ջոկատ աշխատանքի անցան։ Նրանք մեծ եռանդով սկսեցին հավաքել ամեն մի քարը և նետել Վռամի ցույց տված տեղը։ Քարերի տարափը, չխչխկոցը, պիոներների բացականչություններն ու ծիծաղը աշխուժացնում էին շրջակայքը։ Դաշտում քարերի մեծ-մեծ կույտեր էին գոյանում։ Մի ժամ չանցած, կույտերն արդեն թփուտների բարձրության էին հասել։

Մինչև երեկո այսպես աշխատեցին նրանք։ Ո՛չ ոք չծուլացավ, ո՛չ ոք ետ չմնաց,



Բոլո՜րը, բոլորն էլ աշխատեցին ինչքան ուժ ունեին։

Գյուղի փողոցների էլեկտրական լույսերը վառվում էին արդեն, երբ դրուժինան երգով գյուղ մտավ։

Հաջորդ օրը քարքարուտ եկան կոլխոզնիկները։ Ճանապարհին էին նաև Արտաշեսի տրակտորները։ Ճաշից հետո նրանք էլ հասան քարքարուտի եզրին և ծանր տանկերի նման շարք կանգնեցին։

Կոլխոզնիկները դաշտին մոտենալիս



նկատել էին, որ քարքարուտի այս ու այն եզրին քարերի կույտեր կան։ Սերոբ ամին հոնքերը կիտած նայում էր այդ հողամասին ու շտապում բոլորից շուտ տեղ հասնել։

— Ա՛յ ժողովուրդ, քարքարուտն առանց մեզ է սկսել մաքրվել,— զարմացած ասաց Սերոբ ամին։

— Տեսե՛ք, այս կողմում ո՛չ մի քար չի մնացել,— ասաց Անուշ մորաքույրը։

— Ովքե՞ր են հավաքել...

Նրանք դեռ շատ դատողություններ կանեին քարքարուտում կատարվածի մասին, եթե դաշտի ճանապարհին չերևային պիոներական դրուժինայի առույգ քայլող շարքերը։ Նրանք պիոներական մի քայլերգ էին երգում։

— Պիոներնե՜րը,— ձայն տվեց կոլխոզի նախագահը։

— Պիոներնե՜րը,— միաբերան գոչեցին բոլորն ուրախացած։

— Քարքարուտի այս մասը մաքրել են պիոներները, ընկերնե՛ր,— ասաց տրակտորիստ Սուրենն ու խորամանկորեն ժպտաց։

Պիոներները երգելով հասան քարքարուտին ու միացան կոլխոզնիկներին։ Սկսվեց նոր գրոհ խոպանի վրա։

Եվ բոլոր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, կոմունիստներն ու կոմերիտականները, ծերունիներն ու երեխաները, աշխատում էին հերոսների նման։ Նրանք ավտոների ու սայլերի մեջ էին լցնում հավաքած քարերը և տանում թափում ձորը։ Ոմանք էլ պայթեցնում էին մեծ քարերը և լցնում էին փոսերը, արմատախիլ անում մացառները...

Շուտով գործի անցան նաև ընկեր Արտաշեսի տրակտորները։ Նրանք հինգ խոփանի գութաններով սկսեցին ճեղքել քարքարուտը։ Սև հողը՝ շերտ առ շերտ շուռ էր գալիս և առատություն խոստանում կոլխոզնիկներին։

Հաջորդ օրը սևին էր տալիս վարած նոր հողը։ Դա մի ընդարձակ տարածություն էր, որտեղ տրակտորիստ Սուրենը, տրակտորին կցած շարքացանով հողին էր հանձնում ցորենի առաջին սերմերը...

Տասնհինգ օր հետո, կոլխոզի վարչության նախագահ ընկեր Սարգիսը հեռագիր ուղարկեց գյուղատնտեսության մինիստրին։ «Քարքարուտները նվաճված են։ Ցանված է լրացուցիչ հարյուր հեկտար ցորեն» գրված էր հեռագրում։

Ամռանը կոլխոզնիկներն ու պիոներները առատ բերք հավաքեցին քարքարուտից։ Անհիշելի ժամանակներից խոպան մնացած դաշտում աճել էր մարդու հասակից էլ բարձր, լիքը հասկերով, ոսկեհատ ցորենի արտը։

Երբ ցորենով բեռնված վերջին ավտոմեքենան մոտեցավ պահեստին, կոլխոզի հաշվապահ Երվանդ Գուլարյանի հաշվիչը ցույց էր տալիս հետևյալ թվերը՝

100 հեկտար × 25 ցենտներ = 2500 ցենտներ ցորեն...

Կոլխոզնիկներն ու պիոներները պատվով էին նվաճել դարերի խոպանը։



# Խաչիկն ու Վաչիկը

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ
Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Խոսում էին ուրախ, անհոգ
Դպրոցական երկու ընկեր,
Թե իրենցից ո՞վ է արդյոք
Ավելի լավ հայրենասեր:
Խաչիկն ասաց.—Ամեն անգամ
Երբ որ պառկում եմ քնելու,
Ես չեմ թողնում ոչ մի վայրկյան
Մեր լույսն առանց հանգցնելու:
Վաչիկն ասաց.—Ա՛յ քեզ մեծ բան,
Ո՞վ է լսել, ո՞վ է տեսել՝
Մարդ հանգցնի լույսը իր տան,
Նրան ասեն հայրենասեր:
Ասենք այդ էլ... վատ չէ, ոչինչ,
Իսկ ես պատմեմ ահա թե ինչ:
Մի օր դասից տուն եմ գնում,
Անց եմ կենում մի տան մոտից,
Նայեմ՝ տեսնեմ ծուխ է ելնում
Տան կիսաբաց լուսամուտից...
Շուտ հասկացա, թե ինչ է դա.
Իսկույն մոտիկ շենքը մտա,
Զանգ տվեցի զերո և մեկ՝
Եվ ասացի.—Շտապ եկե՛ք...
Խաչիկն ասաց.—Ի՞նչ ես արել,
Միայն... միայն՝ զանգահարել.
Ես էլ, ահա պատմեմ՝ լսիր.
Մի օր գտա մի անձնագիր:
Պարզ է արդեն. ինչպե՞ս անել,
Հո չեմ կարող մեր տուն տանել...
Ու կարդալով հասցեն, իսկույն
Շտապեցի ես տիրոջ տուն:
Անձնագիրը երբ ստացավ,
Նա անսահման ուրախացավ,
Ելավ տեղից մի գիրք բերեց
Ու վրան էլ այսպես գրեց՝
«Հայրենասեր պիոներին,
Նվիրում է Պետրոս քեռին»:
Վաչիկն ասաց.—Ճիշտ չէ դարձյալ,
Պետրոս քեռին դրա համար,
Քեզ երբեք էլ պետք է չասեր
Կամ չանվաներ հայրենասեր:
Խաչիկն ասաց.—Ի՞նչ է, սո՞ւտ է:
Վաչիկն ասաց.— Դեռ շատ շուտ է:
Խաչիկն ասաց.— Սխալվում ես:
Վաչիկը՝ թե.—Շտապում ես:
Իսկ Խաչիկի մայրը կանգնած,
Որ լսում էր վեճը նրանց,
Մտերմաբար մոտենալով
Այսպես ասաց մեղմ ժպտալով.
— Ապրե՛ք, ապրե՛ք, արժե ասել
Երկուսիդ էլ հայրենասեր.
Այդ բոլորն էլ, թեև վատ չեն,
Բայց փոքրիկ են ու դեռ շատ չեն:
Մեր մեծ երկրում սովետական
Ուրիշ շատ մեծ գործեր էլ կան:
Իսկ ձեզանից հիմա դեռ մենք
Մի գլխավոր պահանջ ունենք.—
Ձեր դասերից ետ չմնալ,
Օգնել իրար, առաջ գնալ,
Կարդալ գրքեր միշտ նորանոր,
Լինել ուսման առաջավոր:
Ով ձեզանից լինի արի,
Այս բոլորը լավ կատարի,
Կարելի է նրան ասել
Ամենից լավ հայրենասեր:












Մեր սքանչելի հայրենիքում ստեղծվել են բոլոր հնարավորությունները ուրախ ու երջանիկ մանկության համար:

Սովետական Միության օրինակով, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում կազմակերպվել է երեխաների ուսման ու դաստիարակության գործը:

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում գործում են պիոներական տներ: Բեռլինի պիոներական տան խմբակներից մեկում երեխաները սովորում են ռուս մեծ ժողովրդի լեզուն:

Ուսման գերազանցիկ Կրիստա Հերլիխը գրատախտակի վրա առաջին անգամ ռուսերեն գրել է «Ստալինը երեխաների բարեկամն է» (նկ. № 1): Ինչպիսի՜ սիրով է գրել նա այս երկու բառը: Ուսուցչուհի Վ. Շտրեխլենը հիացմունքով է նայում իր աշակերտուհուն և ուրախանում նրա հաջողության համար: Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը պատերազմի օրերին անգամ չի մոռանում երեխաների կրթության մասին: Ահա Փխենյան քաղաքի դպրոցներից մեկի մի խումբ աշակերտուհիները դիմավորում են ուսումնական նոր տարին (նկ. № 2): Ուրախ ու երջանիկ են ապրում Չինաստանի բազմահազար պիոներները ու դպրոցականները: Բազմաթիվ դպրոցներում, պիոներական տնե-

# Կորած մանկությունն աշխարհում





ռում նրանք կրթություն են ստանում, ձեռք բերում գիտելիքներ: Նայեցեք այս մի խումբ պատանի չինացիներին (նկ. № 3): Նրանք փեստիվալի ճանապարհին կանգ են առել Մոսկվայում և անսահման ցնծությամբ ողջունում են երջանկության ու խաղաղության մայրաքաղաքի աշխատավորներին:

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների երեխաները սովորելու հետ միաժամանակ ուրախ են անցկացնում իրենց հանգիստը: Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Բուդապեշտում երեք տարուց ավելի է, ինչ գործում է մանկական երկաթուղին (նկ. № 4): Այդ երկաթուղին նրանք նվեր են ստացել ժողովրդական կառավարությունից:

Այլ է դրությունը կապիտալիստական երկրներում և նրանց գաղութներում: Ամերիկյան և անգլիական իմպերիալիստները պատրաստում են նոր արյունահեղ պատերազմ: Նրանք թունավորում են մանուկների կյանքը:

Ահա ֆրանսիական բանվորների երեխաները (նկ. № 5): Նրանք օրվա հացի կարոտ են և դպրոցի մասին միայն կարող են երազել: Ամերիկացիներին վաճառված ֆրանսիական կառավարությունը նրանց թողել է որբ և անօթևան: Իտալիայի աշխատավորների երեխաները նույնպես զրկված են սովորելու հնարավորությունից: Դպրոցական հասակ ունեցող երեխաների կեսից ավելին դպրոց չի գնում: Շատ տեղերում երեխաները պառկում են բաց երկնքի տակ (նկ. № 6):

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ժողովուրդը հերոսաբար կռվում է ֆրանսիական գաղութարարների դեմ: Այն շրջաններում, ուր դեռևս իշխում են ֆրանսիացիները, հալածում և սպանում են Վյետնամի աշխատասեր ժողովրդի զավակներին: Ահա թե Սայգոն քաղաքի ֆրանսիական ոստիկանությունն ինչպիսի՜ գազանությամբ է ծեծում ցույցի դուրս եկած երեխաներին (նկ. № 7):





Անասելի ծանր ու տանջալի է երեխաների վիճակը գաղութային երկրներում: Ահա 4 տարեկան աղջիկը (նկ. № 8) գիշերը անց է կացնում սալահատակի վրա՝ գործազուրկ հոր ոտքերի մոտ: Այս փոքրիկ աղջիկը մանկություն չունի: Նրա նման հազարավոր երեխաների մանկությունը խլել են կապիտալիստները:

# ԽԻԶԱԽ ՄԻՐՇՈՆ

Ն. ԲԵԼԻՆՈՎԻՉ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Կանաչախիտ անտառում,
Գետի ափին՝ լեռան տակ,
Մեծ ճանապարհ են շինում
Մարդիկ՝ անվախ, համարձակ:

Ճանապարհն այս գեղեցիկ
Կանցնի ձորով անառիկ
Ու կկապի իրար հետ
Քաղաք ու գյուղ առհավետ:
Գյուղ կգնան ամեն օր
Ավտո, կոմբայն, տրակտոր,
Դեպի քաղաք՝ ցորեն, հաց,
Խնձոր, ծիրան, դեղձ ու տանձ:

Անտառից՝ թավ ու կանաչ
Լսվում էին երգ ու կանչ:

Սև բեղավոր պետն ասաց.
— Ես չեմ տեսնում մեր շարքում
Մեր Դիմոյին՝ սրտաբաց,
Նա բանվոր էր աննկուն:

Այն ժամանակ Յանկան քաջ,
Որ պարտիզան էր առաջ,
Ասաց տխուր, գլխահակ.
— Պատերազմի ժամանակ
Ֆաշիստները կախեցին
Անտառում ծեր Դիմոյին.
Տանը մնաց կինն հիվանդ
Ու որբ Միրշոն խեղճ, գունատ:

Բայց խրճիթում Միրշոն դեռ
Իր անկողնում քնած էր:
Նա չլսեց խոսքերն այս,
Այնքան հստակ, այնքան պարզ:
Երբ արթնացավ՝ արև կար.
Լույսն էր դողում մեղմաբար.
Գնաց անտառ՝ խնձորի,
Բայց դիմացի խոր ձորից
Լսեց աղմուկ, աղաղակ:
Եվ ինչ տեսավ, օ՜ զարմանք...
Արահետը էլ չկար,
Որ ձգվում էր լեռն ի վեր,
Տեսավ մի լայն ճանապարհ,
Շուրջը տնկած նոր ծառեր,
Կառուցման երգն էր հնչում,
Մարդկանց խինդն էր տարածվում:
Խնդրեց փոքրիկ մեր տղան
Բրիգադիրից, որ թույլ տան
Իրեն այնտեղ աշխատել,
Բայց ասացին՝ —Փոքր ես դեռ:
Տխրեց Միրշոն մեր խնդուն,
Էլ չէր ուզում գնալ տուն:

Աշխատանքն է պաշտպանում
Խաղաղությունն աշխարհում:

Ճանապարհին Միրշոն մեր
Մեծի նման խորհում էր.
Ինչպես արագ մեծանալ
Ու պիտանի մարդ դառնալ:
Ու երբ տղան հասավ տուն
Դիմեց մորը սիրասուն.
— Մայրի՛կ, այսօր ես կրկին
Հիշել եմ իմ տատիկին,
Հաճախ էր նա ինձ ասում՝
Ձորը սարի ետևում,
Կախարդական անտառում,
Ուր փերիներն են ապրում,
Կա մոռացված մի ջրհոր,
Շուրջը՝ ծաղիկ, հավք ու լոր,
Իսկ ջրհորի եզերքին,
Կապույտ քողը երեսին,
Նստել է մի լույս աղջիկ՝
Աչքերը սև, հոգին ջինջ:
Նրան կանչում են մարդիկ
Սամոդիվա*) գեղեցիկ:
Հենց որ նրա ջրհորից



Տղան խմի ջուրն անբիծ,
Կմեծանա նա իսկույն,
Կդառնա քաջ, աննկուն:
Օ՜, սիրելի իմ մայրիկ,
Կանցնեմ լեռներն անառիկ,
Ես կխմեմ ջրհորից
Կախարդական ջուրն անբիծ,
Ու կդառնամ ես բանվոր

*) Կախարդուհի:

Իմ երջանիկ երկրում նոր:
Աշխատանքն է պաշտպանում
Խաղաղությունն աշխարհում:

Երբ երեկոն կապուտակ
Առավ գյուղն իր թևի տակ,
Միրչոն ուրախ սրտաբաց՝
«Մնաս բարով»,— մորն ասաց:
Քայլեց հպարտ, աներկյուղ
Անցավ լեռներ, գյուղից գյուղ:
Ու երբ մտավ նա անտառ,
Շուրջը տիրում էր խավար.
Գորշ ագռավն էր կռնչում,
Գայլերն էին կաղկանձում.
— Փոքրի՛կ տղա, դարձիր տուն,
— Փոքրի՛կ տղա, դարձիր տուն:

Բայց չգնաց Միրչոն, տուն,
Կամքն էր հաստատ, անկոտրում:
Փնտրեց ճամփան ջրհորի:
Եվ աղջկան անտառի:
Հսկա լեռան ետևից
Ելավ լուսնյակը նորից,
Ու մեր տղան քաջարի
Տեսավ ճամփան ջրհորի:
Դեմքը ցոլաց լուսնի պես,
Դողաց փոքրիկ սիրտը նեզ.
Եվ ինչ տեսավ, օ՜ զարմանք,—
Բացատում երգ, աշխատանք՝
Սամոդիվան անտառի
Նստած եզրին ջրհորի,
Բայց քող չուներ երեսին
Ու նախարակ՝ իր ձեռքին.
Աղջիկ էր նա շատ սիրուն
Հոգին՝ պայծառ մի գարուն:
Նստած կապույտ երկնի տակ,
Բուլղարուհին նաստրակ,
Փառաբանում էր անվերջ
Սովետական հողը մեծ:
Միրչոն պատմեց աղջկան
Իր իղձերը մանկական,
Եվ աղջիկը՝ նաստրակ,
Պարզեց ջուրը սառնորակ,
Ասաց՝ — Խմի՛ր, քա՛ջ տղա,
Բայց իմացիր, ջուրն նիմա
Մի անպատում հրաշքով
Հուր կդառնա սրտում քո:
Կմեծանաս դու խիզախ,
Կդառնաս քաջ, աննկուն
Ու կլինես անպայման
Խաղաղության մեծ պաշտպան:
Խմեց Միրչոն ջուրն անգին
Կախարդական ջրհորից.
Արշալույսին դարձավ տուն
Հոգով պայծառ ու խնդուն:
— Սամոդիվան, մայրի՛կ, ինձ
Պաղ ջուր տվեց ջրհորից,
Տե՛ս, ինչքա՜ն եմ մեծացել,
Խիզախ քանվոր եմ դարձել:

Մայրը նայեց ու ժպտաց,
Գրկեց որդուն և ասաց.
— Առաջվա պես, իմ բալի՛կ.
Մնացել ես դու փոքրիկ...
Եվ ամոթից Միրչոն մեր
Իսկույն վազեց լեռն ի վեր,
Ժայռից տեսավ՝ ներքևում
Մարդիկ նորից են երգում,
Եվ աշխատում անդադար,
Շինում մի մեծ ճանապարհ:



Իսկ խենթ գետը սրընթաց,
Անձրևներից նորդացած,
Զարնվում էր քարերին,
Գոռում, գոչում մոլեգին:
Բայց քաջ մարդիկ լեռան մոտ
Կռվում էին կրակոտ
Տարերքի դեմ կատաղի,
Փակում ճամփան նեղեղի:
Հանկարծ Միրչոն նամարձակ,
Մեծ ուժ զգաց կրծքի տակ:
Կախարդական ջուրն անգին,
Որ խմել էր ջրհորից,
Փոխվեց հրի բոցկլտուն
Նրա փոքրիկ, նեզ սրտում:
Միրչոն ժայռի կատարից,
Ինչպես աշնան խենթ մրրիկ,
Ցատկեց ուժով կատաղի
Հորձանքի մեջ նեղեղի:
Կռվեց անվախ, աներկյուղ
Տարերքի դեմ անարկու:
Եկավ նրան օգնության
Քաջ Յանկայի բրիգադան.
Ու ճանապարհն ընդարձակ
Այդպես մնաց անխորտակ:
Երբ դառնում էր Միրչոն տուն,
Սրտով պայծառ ու խնդուն,
Տեսավ նորից Յանկային՝
Քանը դրած իր ուսին:
Հայրենասեր մեր տղան



Նայեց, նայեց աղջկան
Ու զարմանքից անսահման,
Ասաց պետին կառուցման.

— Գյուղի ծայրից ոչ հեռու՝
Կախարդական անտառում,
Ջրհորի մոտ տեսա ես
Այս աղջկան լուսերես:
Նրան կանչում են մարդիկ
Սամոդիվա գեղեցիկ:
Ու երբ գետը՝ մոլեգին
Սպառնում էր մեր ճամփին,
Օգնում էր ինձ լեռան տակ
Աղջիկն այս պարզ, հասարակ:
Ժպտաց պետը՝ սրտաբաց
Մեր տղային և ասաց.
— Կախարդական անտառում
Սամոդիվան չի ապրում,
Տեսել ես դու Յանկային,
Պատմել է նա բոլորն ինձ:
Խաղաղության ջուրն աերլ ծ
Խմել ես դու ջրհորից.
Ահա՝ ինչու դու այսօր
Դարձել ես քաջ և հզոր:

*Փոխադր. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ*

# ՋԵՐՄՈՒԿ ԿՈՒՐՈՐՏԸ

*ՄԱՐԻԵՏՏԱ ՇԱՀԻՆՅԱՆ* *Ֆոտո՝ Վ. ԱՄԱԼՅԱՆԻ*

*Մեր Սովետական երկրում շատ հանույքներ կան, բայց թվում է, թե նրանցից ամենալավագույնը ոտքով քայլելն է հայրենի երկրով, նրա դաշտերը և անտառները, լեռներն ու հովիտները ուսումնասիրելը: Քայլելը ձեր մարմինը դարձնում է ամուր և ճկուն, կոփում է ներվերը, հղկում բնավորությունը: Դուք սկսում եք շնչել սովորել: Մի՛ կարծեք, թե բոլորը գիտեն շնչել: Հարկավոր է սովորել ճիշտ, հավասարաչափ, խորը շնչել, որովհետև ճիշտ շնչելու մեջ է առողջ սրտի աշխատանքի երաշխիքը: Ամենից ավելի հեշտ է դրան վարժվել երկարատև, դանդաղ քայլելու ժամանակ:*

*Մեր ռեսպուբլիկան իր տարածությամբ փոքր է, բայց բնությամբ շատ բազմազան: Մի հին հետազոտող Հայաստանն անվանել է «հակադրությունների երկիր»: Մեզ մոտ մի օրվա մեջ կարելի է լեռնանցքում մնալ ձյան տակ և հովտում այրվել կիզիչ արևից:*



Ջրվեժ Ջերմուկ կուրորտի շրջակայքում:

*Ամենից ուշագրավ շրջագայություններից մեկը մեզանում երեք օր տևող մեծ շրջագայությունն է Արփա գետի հոսանքով վեր, Խճուղու ճյուղավորման տեղից, որը Միկոյանից տանում է դեպի Գորիս և ապա Ջերմուկ կուրորտը: Այն կիրճը, որ տանում է դեպի մեր հայրենիքի այդ հիանալի կուրորտը, շատ հետաքրքրական է: Բազալտե ժայռերը խիտ կերպով կուտակված են արագահոս, երկնագույն Արփա գետի երկու կողմում: Գանգուր թփուտները խոնարհվում են գետի վրա, կարծես վազելով ժայռերից ցած են իջնում: Խճուղու ամեն մի պտույտի հետ նորանոր գեղեցիկ տեսարաններ են բացվում:*

*Ծանապարհի վրա պատմական հուշարձան էլ կա. այստեղ բոլշևիկ մարտիկները դիմագրել են մեր հայրենիքի թշնամիներին, որոնք թվով ավելի շատ են եղել նրանցից: Թշնամիները հերոսներին նետել են խոր կիրճը: Նրանց սպանության տեղում այժմ*

կանգնած է Հուշարձանը։ Ծիծեռնակները ճռվողում են, թռչում և հպվում նրան թևերով։ Հուշարձանի պատվանդանի մոտ դաշտային ծաղիկներ են աճում, իսկ անցորդները կանգնում են, հանում գլխարկները, մտածում անցյալի մասին։ Հրաշալի են անցկացրել իրենց կյանքը հերոսները։ Նրանք այդ կյանքը տվել են ժողովրդի երջանկության և բարօրության համար։ Դա իզուր ու անհետ չի կորել։ Սովետական երջանիկ մարդիկ են ապրում այժմ մեր երկրում։ Ճանապարհն ավելի ու ավելի է բարձրանում այնտեղ, որտեղից վազելով իջնում է երկնագույն Արփան, իսկ նա իջնում է մեծ բարձունքից, ձյունապատ լեռներից։

25 կիլոմետրից ավելի պետք է անցնել, որպեսզի երևան կիրճի դարբասները՝ դեպի լայն և բարձր սարահարթը, որտեղ մոտ 2000 մետր բարձրության վրա տեղավորված է Ջերմուկ կուրորտը։

Այս կուրորտը դեռ շատ հնում էլ է հայտնի եղել։ Ժայռի ճեղքվածքից խփում է շատ տաք հանքային աղբյուրը։ Նրա վրա և ցրտին, և՛ շոգին գոլորշի է կանգնած. այդքան տաք է աղբյուրի ջուրը։ Այն ժայռը, որի վրայով նա հոսում է, կարծես թե ծածկված է ժանգով, դարչնագույն աղերի խիտ շերտով։ Աղբյուրը լրիվ հագեցված է այդ բուժիչ հանքային աղերով։ Դեռ հին ժամանակ գիտեին, որ նրա ջուրը բուժում է հողացավը։ Հին փոսերում, որոնք փորված են քարի մեջ, հիվանդները վաննա են ընդունել և նստել են նրանցում տասնյակ ժամեր, ամբողջ օրեր։

Այժմ Ջերմուկի ջուրը ուսումնասիրված է մեծ գիտնականների կողմից։ Հայտնի բժիշկները հիվանդանոցներում փորձել են այդ ջրի ազդեցությունը հիվանդների վրա։ Պարզվել է, որ Ջերմուկի ջուրն իր կազմությամբ շատ մոտիկ է Չեխոսլովակիայի նշանավոր Կառլովարյան (նախկին Կառլսբադի) ջրին, ուր ավելի քան հարյուր տարի գնացել ու գնում են ամբողջ աշխարհի հիվանդները՝ փայծաղի հիվանդությունից, ճարպակալումից, հոդատապից և շաքարախտից բուժվելու համար։ Ջերմուկի հրաշալի ջուրն էլ է բուժում այդ հիվանդությունները և բացի դրանից օգնում է հողացավի դեպքում։

Մեր ռեսպուբլիկան կուրորտում մեծ շինարարություն է ծավալել։ Ինչքա՞ն բան է կառուցված այնտեղ այժմ։ Կառուցվում են լավ շենքեր, ճանապարհներ, պավիլիոններ։



Ջերմուկ կուրորտի վաննաների շենքը և սանատորիան։

Լեռների լանջերին բազմաթիվ զբոսավայրեր կան։ Ջերմուկի գեղեցկությունն ու պարծանքն է հայտնի ջրվեժը։

Հայկական բազալտները արտասովոր տեսք ունեն։ Նրանց մեջ կան շատ բնական կամարներ, փոսեր, քարայրներ։ Մի այդպիսի արտասովոր բնական կամար է կանգնած ջրվեժի մոտ. իսկ ինքը ջրվեժն ասես ապակու հսկայական հոսանքով գահավիժում է ժայռից։ Շոգ օրին կարող ես ժամերով հիանալ նրանով, դեմքդ պահելով մանրահատիկ արծաթե անձրևի ցայտերի տակ։

Հիվանդին բուժում է տաք աղբյուրի ջուրը, որը խմում են ուտելուց առաջ։ Բուժում են նրան Ջերմուկի տաք վաննաները։ Եվ օդը, հրաշալի լեռնային օդը՝ նոսր ու մաքուր այդ բարձրության վրա, հագեցած ծաղիկների և անտառի բուրմունքով, բուժում է նրան ոչ պակաս, քան հանքային ջուրը։

Մեր հայրենիքի, Սովետական Հայաս-

*տանի մարգարիտների թվում Ջերմուկ կուրորտը պատվավոր տեղ ունի։ Մեր Միության բոլոր ծայրերից հազարավոր հիվանդներ իմանալով այդ կուրորտի մասին, նամակներ են գրում, խնդրելով ուղեգրեր ուղարկել և գրել, թե ինչ ճանապարհով կարելի է հասնել կուրորտ։*

*Ամեն մի պիոներ պետք է կարողանա պատասխանել, թե որտեղ է գտնվում այդ նշանավոր կուրորտը։*

*ՍԱՐՄԵՆ*

## ԱՆԹԱՌԱՄՆԵՐ

— Մայրի՛կ ջան, տե՛ս, Ծաղկաձորից
Քեզ ի՞նչ նվեր եմ բերել,
Քաղել եմ այն բարձր սարից,
Ուր ամպն է ինձ համբուրել,—
Ասաց Սուրիկն ուրախ-ուրախ
Ու մոտ վազեց մայրիկին՝
Անթառամի մշտածիծաղ
Ծաղկեպսակը ձեռքին։
Ու գրկվեցին մայր ու որդին,
Իրար կարոտը առան.
Նրանց գրկում ժպտում էին
Ծաղիկները անթառամ։

## ՀԱՄԱՐՁԱԿ ԳԻՏՆԱԿԱՆԸ

*ՀՐ. ԲԱՏԻԿՅԱՆ*
(Բիոլոգիական գիտությունների
դոկտոր-պրոֆեսոր)

*ՆԿ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

*Սովետական գիտնականները մեր տնտեսության զարգացման գործին ակտիվ մասնակցություն են ցույց տալիս։*

*Վոլգա—Դոն, Ամու-Դարյա գետերի վրա այժմ հսկայական աշխատանք է տարվում. սովետական մարդիկ զբաղվում են կոմունիզմի մեծ կառուցումներով. փորում են, ամբարտակներ կառուցում, կանգնեցնում են ջրի հզոր հոսանքը, որ նա հետո վար թափվի հսկայական բարձրությունից, գործի գցի էլեկտրակայանը, լույս և էներգիա տա մեր գործարաններին, տներին, դպրոցներին...*

*Այսպիսի խոշոր աշխատանքը հասարակ ձեռքի գործիքներով չեն անի։ Դրա համար հզոր մեքենաներ են հարկավոր, իսկ այդպիսի մեքենաներ սովետական ինժեներներն ու գյուտարարներն են հնարում։ Հիմա մեր հայրենիքի գործարաններում այնպիսի մեքենաներ ու դազգահներ կան, որոնց նմանը ուրիշ ոչ մի երկրում չկա։*

*Կոմունիզմի խոշոր կառուցումների վրա հիմա այնպիսի էքսկավատորներ են աշխատում, որ մի օրում քսանհինգ հազար բանվորի չափ հող են փորում։ Ահա թե ինչպիսի հսկաներ են դրանք։*

*Այդպես է նաև գյուղատնտեսության մեջ։ Հիմա մեկ հեկտարից կոլխոզնիկները երկու անգամ ավելի ցորենի բերք են ստանում, քան թե առաջ. իսկ Լենինգրադում մարդիկ բույսի սնման նոր մեթոդների և լույսի օգտագործմամբ այնպես են անում, որ մի տարում բանջարանոցը վեց բերք տա։*

*Այդ բոլորը մեր գիտնական-միչուրինականների ձեռքի գործն է։*

*Հենց այդպիսի մի խոշոր գիտնական-միչուրինական է ակադեմիկոս Արտո Ավագյանը։ Նա արդեն երկրորդ Ստալինյան մրցանակն է ստացել։ Իսկ Ստալինյան մրցանակները շնորհվում են այն մարդկանց, որոնք խոշոր ներդրում են կատարում սովետական գիտության և կուլտուրայի մեջ...*

*Մոսկվա։*

*Գնացքից իջնում ես «Լենինյան» կառամատույցում և դիմում դեպի «Լենինյան Գորկա»։ Այստեղ հրաշալի պարկ կա։ Նրա խորքում երևում է մի խաղաղ, սյունազարդ լուսավոր շենք։ Այդ շենքում իր կյանքի վերջին տարիներն է ապրել Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Այժմ այստեղ Լենինի տուն-թանգարանն է, ուր դու կարող ես ծանոթանալ բազմաթիվ էքսպոնատների հետ, որոնք քեզ կպատմեն, թե ինչպես է Լենինի—Ստալինի մեծ պարտիան սկսել աշխարհի վերափոխման գործը։ Այս թանգարանի մոտ է Լենինի անվան*

Գյուղատնտեսական Գիտությունների Համամիութենական ակադեմիայի փորձարկման բազան։

Հրաշալի հիմնարկ է այս բազան։ Այն, ինչ որ մեր կոլխոզային գյուղում վաղն է կատարվելու, բազայում կատարվում է այսօր։ Այստեղ է, որ այնքան սրտագին զրույց է տեղի ունենում մարդու և բնության միջև, լուռ, բայց իմաստուն զրույց։ Գիտնականը հարցնում է, բնությունը՝ պատասխանում, երբեմն էլ բնությունը չի ուզում պատասխանել, համառում է, այդ ժամանակ գիտնականն իր փորձերով ստիպում է նրան։



Այս բազայում են աշխատում աշխարհի լավագույն միչուրինականները Տրոֆիմ Դենիսովիչ Լիսենկոյի ղեկավարությամբ։ Այս բազայում է աշխատում ակադեմիկոս Ավագյանը։

Մտնում ես բազա։

Առջևդ փռվում է բարձր, քամու տակ խոշոր ալիքներով ծփացող ցորենի դաշտը։ Այդ Ավագյանի արտերն են։

Խաղողի ողկույզը բոլորիս հայտնի է. ուրիշ պտուղներ էլ կան, որ փնջերով են աճում, բայց ո՞վ էր տեսել, որ ցորենի ցողունի վրա հասկերի փնջեր լինեն։ Այդպիսին են Ավագյանի արտերի ցողունները։ Այդպիսի ցորենը կոչվում է «Ճյուղավոր ցորեն»։ Դրա ստացման համար գիտնականը երկար է չարչարվել, հարյուրավոր ու հազարավոր փորձեր է արել։ Ճյուղավոր ցորենը համառել է, դիմադրել, բայց պարտվել է ու հանձնվել գիտնականին։ Այժմ Ավագյանը իր ցանած ամեն մի հատիկին հրամայում է.

— Ամեն մեկիցդ հազարից ավելի հատիկ եմ պահանջում։

Եվ հատիկները խելոք երեխաների նման լսում են նրան։

Հենց անցյալ տարի ամեն մի հատիկից գիտնականը հազար յոթ հարյուր ինսուն հատիկ ստացավ։ Ստացավ և ուղարկեց կոլխոզնիկներին։ Կոլխոզնիկներն էլ ցանեցին ու ամեն հեկտարից 30—40 ցենտներ բերք ստացան։

Առաջ գիտնականները կարծում էին, որ բույսերի միայն սեռական բջիջները կարող են զարգացումն սկսել և մինչև հասունացում հասնել։ Ակադեմիկոս Ավագյանը սոխաբույսերի օրինակով ապացուցեց, որ այդ հատկությունն ունեն նաև բույսերի այն հյուսվածքները, որոնցից բջջի զարգացումն է սկսվում։ Այս հայտնագործությունը նոր ձևով բացատրեց բույսի զարգացման բազմաթիվ հարցերը։

Լիսենկոյի նման, ակադեմիկոս Ավագյանն էլ արտաքին պայմանների ազդեցությամբ փոխում է բույսերի ժառանգական հատկությունները։ Նրանց նոր հատկություններ է տալիս, որոնք անցնում են հետագա սերունդներին։ Օրինակ բազմաթիվ փորձերով Ավագյանը աշնանացան ցորենից գարնանացան ցորեն է ստացել։

Պատվաստման ճանապարհով գիտնականը պամիդորի և կարտոֆիլի զարմանալի տեսակներ է ստացել։ Նա դեղին, մեծապտուղ պամիդոր «Ալբինան» պատվաստել է կարմիր մանրապտուղ պամիդորի «Մեքսիկանսկի» տեսակի վրա։ Այնպես է արել, որ դեղինը սնվել է կարմրի հյութերով և ստացվել են պտուղներ, որոնք ոչ դեղինին են նման և ոչ էլ կարմրին։ Ստացվել են խոշոր-կարմիր պամիդորներ, վառ դեղին, մոռագույն, սպիտակադեղին. բոլորն էլ վաղահաս, հյութեղ ու համեղ։ Սրանց սերմերն էլ է գիտնականն ուղարկել կոլխոզնիկներին։

— Ցանեցե՛ք, խնդրեմ...

Այս նույն ճանապարհով գունավոր ցածրորակ կարտոֆիլներից Ավագյանը սպիտակ խոշոր, սննդարար կարտոֆիլներ է ստացել։

**Ստացել է և ուղարկել կոլխոզնիկներին.**

*— Աճեցրե՛ք, խնդրեմ...*

*Ակադեմիկոս Ավագյանի գործերը հնարավոր չէ մեկ-մեկ թվել: Նա ամեն օր նորանոր փորձեր է անում, բույսերի նորանոր տեսակներ ստանում: Իր ավագ ընկեր Լիսենկոյի նման, նա էլ ցերեկ ու գիշեր մտածում է այն մասին, թե ինչպես անի, որ ավելի ու ավելի շատ օգուտ տա մեր մեծ հայրենիքին:*

*Ահա թե ինչու են մեր պարտիան ու կառավարությունը այդքան բարձր գնահատում անվանի գիտնականին:*

*Մեր երիտասարդ սերունդը շատ բան պետք է սովորի խիզախ գիտնականից, ակադեմիկոս Ավագյանից:*

---




*ԱՐԱՄ ՕՀԱՆՅԱՆ* — *Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ*

Դոբրուջայի*) անծայր տափաստանը չոր է, ամայի: Տեղ-տեղ զարշահոտ ճահիճների և չորացող լճակների շուրջը փռված եղեգնուտների մեջ փոքրիկ, աղքատ գյուղեր են երևում: Դեռ մի քանի տարի առաջ Դոբրուջայի գյուղերի լռությունը խռովում էր միայն լճակների վրա սավառնող վայրի բադերի կռնչյունը: Երաշտից տառապող գյուղացիները երազում էին Դանուբի և Սև ծովի ջրերով ոռոգել իրենց հողերը: Չէ՞ որ Դոբրուջայի մի կողմում Դանուբն է, իսկ մյուս կողմում Սև ծովը. բայց գյուղացիների համար ո՞վ պետք է ջրանցք կառուցեր: Կալվածատերն, իհարկե, այդ մասին չէր մտածի. նա մտրակի ուժի տակ էր պահում գյուղացիներին և քամում նրանց քրտինքը, խլում բերքի մեծ մասը:

Վերջապես մի օր Դոբրուջայի ռումինացի և բուլղար գյուղացիների բախտը բացվեց: 1944 թվի օգոստոսին Սովետական հերոսական բանակը հետապնդելով ֆաշիստական փախչող զորքերին, մտավ Ռումինիա և աշխատավորներին ազատագրեց կապիտալիստների և կալվածատերերի դարավոր ու ծանր լծից: Երկրում ստեղծվեց ժողովրդադեմոկրատական կառավարություն: Երկրի բնական հարստությունները, հողերը, բանկերը, գործարանները, երկաթուղիները ժողովրդի սեփականություն դարձան: Ազատագրված ժողովուրդը մեծ խանդավառությամբ սկսեց նոր գործարաններ, երկաթուղիներ, ջրանցքներ կառուցել: Սովետական Միության օգնությամբ ռումինական ժողովուրդը բռնեց սոցիալիզմի ուղին:

Դոբրուջայի գյուղացին էլ իր մեջքն ուղղեց և որոշեց կատարել պապերի և իր իղձը՝ Դանուբից մինչև Սև ծովը ջրանցք անցկացնել:

1949 թվին սկսվեց Դանուբ—Սև ծով ջրանցքի համաժողովրդական շինարարությունը: Ջրանցքը կառուցելու համար Դոբրուջա եկան տասնյակ հազարավոր մարդիկ՝ Բուխարեստի պատանիներն ու աղջիկները. բանվորները և ուսանողները, Տրանսիլվանիայի, Բանատի, Կրիշանայի գյուղացիները, Ռեշիցա արդյունաբերական քաղաքի փորձված մասնագետները: Սովետական ինժե-

---

*) *Դոբրուջան Ռումինիայի հարավ-արևելյան մասում՝ Սև ծովի և Դանուբ գետի ստորին հոսանքի միջև ընկած շրջանն է:*




ներներն ու գիտնականները նույնպես օգնության գնացին ռումինացի գյուղացիներին: Նրանք իրենց հետ տարան սովետական հզոր տեխնիկան՝ տրակտորներ, ավտոմեքենաներ, էքսկավատորներ, կոմպրեսորներ: Ջրանցքի կառուցողները եկան Սովետական Միություն՝ Մոսկվայի անվան ջրանցքի և կոմունիզմի մեծ կառուցումների շինարարության փորձը ուսումնասիրելու:

Վերադառնալով Ռումինիա նրանք որոշեցին Սովետական Միության օրինակով հինգ տարվա փոխարեն ջրանցքի շինարարությունն ավարտել չորս տարում:

Ջրանցք փորելն սկսեցին Չերնավոդա քաղաքի մոտ, որտեղ Դանուբը թեքվում է դեպի հյուսիս: Չերնավոդայից ջրանցքը գնում է դեպի արևելք և Միդիա հրվանդանի մոտ հասնում Սև ծովին: Ջրանցքի շնորհիվ Միդիան նոր, խոշոր ծովային նավահանգիստ է դառնում: Չերնավոդայից մինչև այդտեղ ջրանցքի երկարությունը 72 կիլոմետր է: Նրա ափերին ստեղծվում են նոր քաղաքներ՝ Մեջիդիա, Պորտա-Ալբա, Նավոդարի:

Դանուբ—Սև ծով ջրանցքը 7 անգամ կրճատում է նավերի ուղին և էժանացնում բեռների փոխադրությունը: Մեծ չափերի է հասնում առևտուրը՝ Ռումինիայի, Սովետական Միության և մյուս ժողովրդա-դեմոկրատական երկրների միջև: Բայց այդ դեռ քիչ է:

Դանուբ—Սև ծով ջրանցքի ջրերը կյանք են տալու նաև Դոբրուջայի գյուղատնտեսությանը: Ոռոգվելու են հարյուր հազար հեկտար չոր, դարերով ծարավ մնացած հողեր: Ջրանցքի ափին հիմնադրվող նոր գյուղերն ու քաղաքները շրջապատվելու են ծփուն արտերով, կանաչ այգեստաններով: Ոռոգվող հողերում տնկվում են 15.000 հեկտար դաշտապաշտպան անտառաշերտեր, որոնք պատնեշ են հանդիսանալու հյուսիս-արևելքից փչող չոր քամիների դեմ: Դոբրուջայի կլիման էլ կմեղմանա, ավելի նպաստավոր ու հաճելի կդառնա:

Ասում են Դանուբը հարազատ եղբոր պես նման է Վոլգային ու Դնեպրին: Այն օրվանից, երբ Դանուբի ափերին ապրող մարդիկ Սովետական Միության օրինակով և նրա օգնությամբ սկսեցին սոցիալիզմ կառուցել, Դանուբը իսկապես դարձավ Վոլգայի ու Դնեպրի հարազատ եղբայրը:




Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

Առանցքի շուրջը պտտվում է երեք հարկանի մի տուն։ Այդ տունը մի քանի մեծ լուսամուտ ունի։ Տնից երկարում է սլաքը։ Նա այնքան հաստ է, որ նրա վրա պատրաստված է մի նեղ ճանապարհ՝ բազմաթիվ աստիճաններով։ Ճանապարհի երկայնքով, փոքրիկ սյուների վրա, էլեկտրական լապտերներ են կախված։

Այդ վիթխարի տունը հենց էլեկտրական քայլող էքսկավատորն է։ Նա կշռում է 1200 տոննա, շերեփի ծավալը 14 խորանարդ մետր է, իսկ սլաքի երկարությունը՝ 65 մետր։ Միայն շերեփի մեջ վաթսուն մարդ ազատ կարող են տեղավորվել։

Ահա կիսաշրջան կատարելով շերեփը հողը թափում է սարի վրա. մի ակնթարթ հետո սլաքը նորից կախվում է փլվածքի վերևում։ Մի րոպե չանցած, էքսկավատորը փխրեցնում է հողի հսկայական զանգվածը, վերցնում, բարձրացնում ապագա ջրանցքի խորը փորվածքի հատակից և տանում հարյուր մետրից ավելի հեռավորության վրա ու դատարկում արհեստական սարի գագաթին։ Եթե շերեփն իր բեռը պատահմամբ թափի մի ավտոմեքենայի վրա, մեքենան բոլորովին կծածկվի հողով։ Այս հսկա և հզոր էքսկավատորը սովորականից տարբերվում է նրանով, որ շարժման մեջ է դրվում էլեկտրականությամբ. իսկ մյուս էքսկավատորները ներքին այրման շարժիչներ ունեն, ինչպես ավտոմեքենաներն ու տրակտորները։ ՔԷ 14/65 էքսկավատորի վրա 48 էլեկտրական մոտոր կա։ Նրանց ընդհանուր հզորությունը 7000 կիլովատ է՝ մի փոքրիկ քաղաքի էլեկտրական էներգիա։ Վիթխարի էքսկավատորն իր էներգիան ստանում է մոտիկ գտնվող էլեկտրական ենթակայանից։

Էքսկավատորները սովորաբար թրթուրավոր են լինում, իսկ սա հաստատված է հատուկ «դահուկների» վրա։ Երբ պետք է լինում աշխատանքի համար մի տեղից մի այլ տեղ փոխադրել, այդ «դահուկները» շարժվում են և էքսկավատորը երկու մետրանոց «քայլ» է կատարում։ Ամեն մի «քայլը» նա անում է մեկ րոպեում։

Էքսկավատորն աշխատում է ամբողջ



*օրը՝ ցերեկ ու գիշեր, երեք հերթափոխով: Ամեն մի հերթափոխի ժամանակ մեքենայի վրա աշխատում են հինգ մարդ: Տասնհինգ մարդ մեկ օրում այդ մեքենայով 7000 բանվորի աշխատանք են կատարում: Այդ հսկա մեքենան մեկ ամբողջ օրում կարող է փորել մի այնպիսի փոս, որի մեջ երեք հարկանի շենք կտեղավորվի:*

*Էքսկավատորի վրա կան մի շարք հարմարություններ: Մետաղյա սանդուղքով կարելի է մտնել մեքենայական դահլիճը, որը մի փոքրիկ էլեկտրակայանի դահլիճի է նման: Կան նաև ընդարձակ ու լուսավոր կաբիններ, հեռախոս, ռադիոկայան:*

*ՔԷ 14/65 էքսկավատորը շատ բարդ մեքենա է: Այդպիսին ոչ մի տեղ և ոչ ոք չի կառուցել: Նրա վրա մարդու չափ մեծ տառերով գրված է մարկան: Դա ցույց է տալիս, որ էքսկավատորը պատրաստված է Ուրալի ծանր մեքենաշինության գործարանում, որը գտնվում է Սվերդլովսկ քաղաքում: Այս վիթխարի մեքենան գործարանում հավաքելն անհնար է: Նրա բոլոր մասերը պատրաստ վիճակում ուղարկում են աշխատանքի վայրը և այնտեղ էլ հավաքում:*

*Քայլող էքսկավատորի կոնստրուկցիան ստեղծելու համար սովետական կոնստրուկտորներ՝ Բ. Ի. Սատովսկին, Տ. Ե. Իսայևը, Ս. Կ. Բորիսովը և ուրիշ ինժեներներ արժանացել են Ստալինյան առաջին աստիճանի մրցանակի:*

*Այս վիթխարի էքսկավատորն այժմ աշխատում է կոմունիզմի մեծ կառուցումներում:*



# ՇԱԽՄԱՏԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ՎԱՐՊԵՏՆԵՐԸ

*Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ*

(Շախմատի միջազգային վարպետ)

Սովետական Միությունը շախմատի համաշխարհային կենտրոնն է: Շախմատի համաշխարհային առաջնության մրցումներն արդեն երկու անգամ է, որ լինում են Մոսկվայում: Ասպարեզի վրա սովետական շախմատիստներից բացի այժմ համաշխարհային չեմպիոնի հավակնորդներ չկան:

Աշխարհի ամենախոշոր շախմատիստները այժմ համարվում են սովետական գրոսմայստրներ՝ Միխայիլ Բոտվիննիկը և Դավիթ Բրոնշտեյնը:

Միխայիլ Բոտվիննիկը ծնվել է 1911 թվին: Դեռ դպրոցում նա ծանոթացավ շախմատին և շատ կարճ ժամանակամիջոցում գրավեց շախմատասեր հասարակության ուշադրությունը: Տասնվեց տարեկան հասակում նա արդեն մասնակցում է համամիութենական տուրնիրին և ստանում շախմատի վարպետի կոչում:

Բոտվիննիկի առաջին խոշոր հաղթանակը եղավ Սովետական Միության չեմպիոնի կոչման նվաճումը 1931 թվականին, երբ նա ընդամենը քսան տարեկան էր: Այդ տարվանից սկսած Բոտվիննիկը շարունակ հաղթող է դուրս գալիս համամիութենական և միջազգային տուրնիրներում:

Բոտվիննիկը սովետական առաջին գրոսմայստերն է: Այդ կոչումը նա ստացավ 1935 թվականին Մոսկվայի միջազգային տուրնիրում հաղթանակ տանելու շնորհիվ: Հետագայում միջազգային խոշոր տուրնիրներին մասնակցելով նա դառնում է աշխարհի ամենախոշոր շախմատիստներից մեկը:

Բոտվիննիկն իր ամենափայլուն հաղթանակը տարավ 1948 թվականի աշխարհի առաջնության մատչտուրնիրում: Այստեղ նա հաստատուն կերպով գրավեց առաջին տեղը և ստացավ աշխարհի չեմպիոնի պատվավոր կոչումը:

Մեր երկրի մյուս խոշորագույն շախմատիստը Դավիթ Բրոնշտեյնն է: Նա դեռ շատ երիտասարդ է, բայց արդեն ձեռք է բերել համաշխարհային շախմատիստի անուն:

Դավիթ Բրոնշտեյնը ծնվել է 1924 թվին: Նա Կիևի Պիոներների պալատի սան էր: Հենց այստեղ էլ սկսում է շախմատ խաղալ և հետագայում իր դեկավար վարպետ Կոստանտինոպոլսկու ձեռքի տակ աճում ու կատարելագործվում է: Բոտվիննիկի նման Բրոնշտեյնն էլ 16 տարեկան հասակում վարպետի կոչում է ստանում:

1948 թվականին Բրոնշտեյնը Ստոկհոլմի միջազգային տուրնիրում գրոսմայստերի կոչում է նվաճում: Նույն թվականից սկսած համամիութենական

և միջազգային բոլոր տուրնիրներում նա հաղթող է դուրս գալիս:

1950 թվականին աշխարհի չեմպիոնի կոչման հավակնորդների մատչում Բրոնշտեյնը գրոսմայստեր Բոլեսլավսկու հետ բաժանեց առաջին և երկրորդ տեղերը. այնուհետև հաղթելով Բոլեսլավսկուն, նա իրավունք ստացավ Բոտվիննիկի հետ վիճարկելու աշխարհի չեմպիոնի կոչումը:

Աշխարհի առաջնության մատչը գրոսմայստերներ Բոտվիննիկի և Բրոնշտեյնի միջև տեղի ունեցավ Մոսկվայում այս տարի գարնանը: Բոտվիննիկի և Բրոնշտեյնի միջև մղվող լարված պայքարը չտեսնված հետաքրքրություն առաջ բերեց:

Մատչի ընթացքին հետևում էին Սովետական Միությունում և աշխարհի բոլոր երկրներում: Մասնակիցների ուժերը հավասար էին: Պայքարն ավարտվեց 12:12 հաշվով: Մատչի պայմանների համաձայն աշխարհի չեմպիոնի կոչումն իր ձեռքում պահեց գրոսմայստեր Բոտվիննիկը:

Մատչի խաղերն ընթացան սպորտային լարված պայքարի մթնոլորտում: Սա բնորոշ է սովետական շախմատիստների համար: Երկու հակառակորդն էլ ձգտում էին հետաքրքիր պայքարի և շախմատային տախտակի վրա ստեղծում էին սուր վիճակներ:

## ԵՐԿՈՒ ՀԵՏԱՔՐՔԻՐ ՎԵՐՋՆԱԽԱՂ

Բերենք երկու հետաքրքիր վերջնախաղեր այդ նշանավոր մատչից.

Դրություն մատչի 9-րդ խաղից:

Քայլը սպիտակներինն է.

Բրոնշտեյն



Բոտվիննիկ

Այս դրության մեջ Բրոնշտեյնը շատ հետաքրքիր կոմբինացիա է անցկացնում.

| | |
|---|---|
| 15. b5 – b6 | Փd7 : a4 |
| 16. b6 –b7 | Փa4 : b3 |
| 17. b7 : a8 Թ. | Փa7–b6 |
| 18. a2 : b3 | Թe8–b5 |
| 19. Ձe2–c3 | Թb5 : b3 |
| 20. Նa1 : a6 | |

և սպիտակները ձեռք բերեցին շահելու համար անհրաժեշտ դիրքեր, բայց հետագայում անճշտություններ հետևանքով խաղն ավարտվեց ոչ ոքի:

Դրություն մատչի 32-րդ խաղից:

Քայլը սպիտակներինն է.

Բոտվիննիկ



Բրոնշտեյն

Բրոնշտեյնը գտնում է հաղթանակի հասնելու ամենակարճ և էֆեկտավոր ճանապարհը.

37. Փh4—g3!

եթե 37·Թ: b3, ապա 38·Նf8+Թg8 39·Փ: c5×

38·Թb3 : g8+ և սևերը անձնատուր եղան:

## ԱՌԱՋԻՆ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆ

Քաղաքն ասես սովորականից շուտ էր արթնացել: Արևը դեռ իր առաջին շողերն էր պարզել դեպի ջինջ երկինք, բայց փողոցներում արդեն արտակարգ աշխուժություն էր: Բոլորն շտապում էին, բարձրաձայն խոսում, միմյանց ողջունում, հեռվից կանչում: Կարծես ամբողջ բնակչությունը տոնական ցույցի էր դուրս եկել:

Մեծ եռուզեռ էր դպրոցների բակերում և հրապարակներում: Խումբ-խումբ հավաքված դպրոցականները կատակում էին, ծիծաղում, միմյանց նոր դասագրքեր ցույց տալիս, դասատուներին բարձրաձայն ողջունում:

Անհամբեր էին բոլորը: Անհամբերությունից ավելի աշխույժ էին դարձել նաև Բերիայի անվան

դպրոցի աղջիկները: Ե՞րբ պետք է հնչի զանգը, ե՞րբ պետք է բացվեն լայն դռները, ե՞րբ պետք է մտնեն թարմ ներկից գեղեցկացած միջանցքները...

— Տեսնես ո՞րն է մեր դասարանը...

— Տեսնես ո՞վ է մեր նոր դասատուն...

— Տեսնես ո՞վ է իմ զույգը...

Եվ այսպես անընդհատ հարցերի տարափ է տեղում:

Հանկարծ այնպիսի լռություն տիրեց, որ բակը կարծես միանգամից դատարկվեց: Բոլորի հայացքները ուղղվեցին դեպի մուտքը: Այնտեղ կանգնած էր դպրոցի դիրեկտոր ընկեր Պիվազյանը, ուսմասվարները և դասատուները: Դիրեկտորը մի պահ ժպտուն հայացքով նայեց աղջիկների պայծառացած դեմքերին և հակիրճ խոսքով ողջունեց նրանց:

— Առաջին օր, առաջին ուրախություն, սիրելի երեխանե՛ր: Բարով եք եկել, ցանկանում եմ ձեզ հաջողություն, առողջություն, ուժ ու եռանդ ուսման գործում...

Բուռն ծափերի որոտն ու զանգի առաջին հընչյունները միախառնվեցին: Դռները լայն բացվեցին. աշակերտուհիները զույգ-զույգ մտան ընդարձակ սրահը և ապա ստուգող հայացքով չորս կողմը նայելով քայլեցին դեպի դասարանները:

Շուտով ամբողջ դպրոցը պարուրվեց աշխատանքի լռությամբ: Սկսվեց առաջին դասը:

Այսպես կազմ ու պատրաստ սկսեց իր նոր ուսումնական տարին Երևանի դպրոցներից մեկը: Եվ մի՞թե միայն այդ դպրոցը: Մեր լայնարձակ Հայրենիքի պանծալի մայրաքաղաքի և բոլոր ռեսպուբլիկաների տասնյակ հազարավոր դպրոցների ուսուցիչներն ու աշակերտները աշխատելու և սովորելու բուռն ցանկությամբ սկսեցին նոր 1951—52 ուսումնական տարին: Հայաստանի տասնյակ հազարավոր դպրոցականներ նույնպես իրենց դասարանները մըտան ուսման անհագ ծարավով:

Այսօր նրանց նոր տարվա առաջին ուրախության օրն է, սեպտեմբերի մեկը: Թող ուրախությամբ անցնի ամբողջ ուսումնական տարին. թող ուրախությամբ զարդարվի ուսման և աշխատանքի ամեն մի օրը...

# ՇԱՐԺՈՒՆ ԽԱՂԵՐ

## 1. ԷՍՏԱՖԵՏԱ ՑԱՏԿԱՊԱՐԱՆՈՎ

*Խաղացողները երկու հավասար խմբի են բաժանվում: Խմբերը ծոծրակով շարվում են սահմանագծի վրա իրարից 3—4 քայլ հեռավորությամբ:*

*Սահմանագծից 30—50 քայլ հեռավորության վրա շարքերի դիմաց որպես նշանացույց աթոռ կամ քար է դրվում:*

*Խմբերի առաջին խաղացողները ցատկապարան ունեն: Խաղն սկսելու հրահանգը տրվելուն պես, նրանք սկսում են ցատկապարան գցելով վազել, շրջանցել նշանացույցը և վերադառնալով ցատկապարանը հանձնել մյուս խաղացողներին: Այսպես էլ շարունակվում է խաղը:*

*Այն խումբը, որը շուտ է վերջացնում, շահում է մի միավոր, իսկ հաղթում է այն խումբը, որը 2 միավոր ունի:*



*Խաղը արագություն, ճարպկություն և ցատկելու ունակություններ է զարգացնում:*

## 2. ՀԵՏԵՎԻՐ ՂԵԿԱՎԱՐԻՆ

*Խաղացողները մի մեծ շրջան են կազմում: Բոլորը, բացի մեկից, իրենց շուրջը փոքրիկ շրջանակ են գծում: Խաղի ղեկավարը հրահանգում է՝ «Շարվիր»:*

*Բոլորը դուրս են գալիս իրենց շրջանակներից և շարվում խաղի ղեկավարի ետևը: Նվագի տակ նրանք սկսում են քայլել շրջանակների վրայով: Երբ նվագը դադարում է, խաղացողներն անմիջապես աշխատում են կանգնել շրջանակների մեջ: Ով առանց շրջանակի է մնում, դուրս է գալիս խաղից: Ամեն անգամ, երբ մեկը խաղից դուրս է գա-*



լիս մի շրջանակ ջնջվում է. այնպես որ խաղացողների թիվը միշտ մեկով ավելի է լինում շրջանակների թվից։ Հաղթում է նա, ով վերջին շրջանակում է մնում։

Նվագելու հարմարություններ չլինելու դեպքում, խաղը կարելի է անցկացնել սուլիչի, կամ ծափի տակ։

Խաղը նպաստում է ուշադրության զարգացմանը։

# ԽԱՂԵՐ ՍԵՂԱՆԻ ՇՈՒՐՋ

## 1. ՔԱՂԱՔՆԵՐ

Խաղի ղեկավարը առաջարկում է բոլոր խաղացողներին՝ թերթիկի ճակատին գրել իրենց անուն ազգանունները։ Երբ բոլորն էլ պատրաստ են, ղեկավարը նրանց տալիս է երկու րոպե ժամանակ և ասում մի տառ. օրինակ՝ Ա, Բ, Օ, Մ և այլն։ Խաղացողները սահմանված ժամկետում սկսում են գրել տրված սկզբնատառով սկսվող քաղաքների անուններ։ Ժամանակը լրանալուն պես, ղեկավարը հավաքում է բոլոր թերթիկները և սկսում հաշվել։ Հաղթում է նա, ով ամենից շատ քաղաքների անուններ է գրել։ Այլ սկզբնատառով գրված անունները ջնջվում են։

## 2. ԹՌՉՈՒՆՆԵՐ

Խաղացողները թերթիկների ճակատին գրել են իրենց անուն ազգանունները և սպասում են ղեկավարի ազդանշանին։ Ղեկավարը նայում է ժամացույցին և ասում՝ «Թռչուններ»։

Խաղացողները անմիջապես սկսում են գրել զանազան թռչունների անուններ։ Մեկ կամ երկու րոպեից հետո ղեկավարը հավաքում է թերթիկները և խաղացողների հետ միասին ստուգում։ Հաղթում է նա, ով ամենից շատ թռչունների անուններ է գրել։

Այս կարգով կարելի է խաղալ գրելով ծառերի, ձկների, ծաղիկների, գազանների անուններ։ Այսպիսով կարելի է վերհիշել, սովորել և իմանալ շատ քաղաքների, գետերի, կենդանիների և թռչունների անուններ։

ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԲԱՌԱԽԱՂ

Դուք տեսնում եք տառերով լրացված վանդակներ։ Տառերը կազմում են հայ հռչակավոր գրողներից մեկի տասը ստեղծագործությունների անունները։ Սկսեցեք ձախ կողմի վերին անկյունից և կարդացեք հորիզոնական գծերով։ Աջ անկյանը հասնելով շարունակեցեք կարդալ հետևյալ սյունակը նորից ձախից՝ աջ և այսպես շարունակ։ Որպեսզի ստացվեն ստեղծագործությունների անունները, պետք է կարդալու ընթացքում բաց թողնել որոշ տառեր։ Բաց թողած տառերը սևացրեք մատիտով և սևացրած վանդակներից կստացվի այդ նույն հեղինակի ամենածանոթ հերոսներից մեկի անունը։

| | | | | | | | | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | Ծ | Ն | Վ | Ն | Ռ | Ճ | Ե | Ս | Ա | Ս | Ռ | Լ | Տ | Հ | Ն | Ա | Ձ | Ա | Ց | Ր | Ռ | Թ | Ի |
| Դ | Հ | Ա | Ա | Վ | Ի | Թ | Ր | Ը | Թ | Մ | Կ | Յ | Ա | Ռ | Բ | Ր | Ե | Վ | Ր | Ա | Դ | Թ | Ի |
| Ա | Ս | Ռ | Ն | Ղ | Ռ | Մ | Ի | Ն | Ն | Ը | Մ | Ի | Ն | Վ | Ի | Ա | Կ | Խ | Ա | Փ | Թ | Ա | Ի |
| Լ | Մ | Ե | Ն | Վ | Ե | Զ | Լ | Ր | Տ | Ը | Ք | Հ | Ա | Ժ | Ն | Ա | Ա | Ձ | Ձ | Ա | Ա | Ր | Ը |
| Ա | Ն | Ի | Ր | Ծ | Ա | Ծ | Ի | Հ | Ա | Ր | Ն | Ն | Հ | Ս | Ը | Ա | Ճ | Ր | Ռ | Յ | Ն | Ն | Ռ |
| Կ | Ա | Ա | Ռ | Ռ | Ն | Գ | Ր | Ա | Ղ | Ն | Ի | Ք | Կ | Ա | Խ | Ս | Պ | Ա | Ե | Ն | Ր | Ջ | Ա |
| Ր | Ի | Վ | Ե | Ե | Ր | Ժ | Ր | Ը | Լ | Ո | Ղ | Ե | Ե | Ց | Ի | Ք | Ս | Ի | Ա | Ն | Ք | Ո | Ն |

*Այնուհետև հերոսի անունը կազմող սևացած վանդակների միջի տառերը կարդալով, դուք կիմանաք, թե այդ հեղինակը որ թվականին է ծնվել և երբ վախճանվել։*

Առաջարկ ԵԴԱՆՅԱՆ ՀԱՄԼԵՏԻ

## ՀԱՎԱՔԵՑԵՔ ԾԱՌԱՍԵՐՄԵՐ

Մեր Հայրենիքի անտառազուրկ վայրերը ծառազարդելու, կլիման լավացնելու, երկիրը գեղեցկացնելու համար հարյուր հազարավոր կիլոգրամ ծառասերմ է հարկավոր։ Այս գործում մեծ անելիքներ ունեն պիոներներն ու դպրոցականները։ Եթե ամեն մի պիոներ 5—6 կիլոգրամ սերմ հավաքի՝ շատ լավ կլինի։ Դրա համար անհրաժեշտ է իմանալ, թե երբ են հասնում սերմերը և որտեղ ինչ ծառի սերմ կարելի է հավաքել։

Ծառերի և թփերի սերմերի մեծ մասը հասնում է ամռանն ու աշնանը։ Օգոստոսին հասնում են՝ վայրի խնձորի, տանձի, սալորի սերմերը. մի քիչ ավելի ուշ՝ սեպտեմբերին, հասնում է՝ բոխու, հացենու, սպիտակ ակացիի, լորենու և մի շարք այլ տեսակների, իսկ հոկտեմբերին՝ կաղնու և հաճարենու սերմերը։ Այդ ժամանակ Հայաստանի պիոներներն ավելի հաճախ կարող են դուրս գալ սերմնահավաքի։ Ղափանի, Նոյեմբերյանի, Շամշադինի և Դիլիջանի պիոներները կարող են հավաքել կաղնու սերմ։ Թխկիի սերմ կարելի է հավաքել բոլոր անտառներում, հացենու՝ նույնպես։ Ղափանի, Շամշադինի, Նոյեմբերյանի, Ստեփանավանի և մյուս անտառոտ շրջանների երեխաները կարող են վայրի տանձի ու խնձորի շատ սերմ հավաքել։ Դիլիջանի, Կիրովականի և Նոյեմբերյանի անտառներում բավականին առատ է լորենու սերմը։

Սպիտակ ակացի շատ կա Ղափանի և Կոտայքի շրջաններում. բայց դա պետք է փնտրել ոչ թե անտառներում, այլ պուրակներում, զբոսավայրերում և ընդհանրապես անտառներից դուրս։ Ալավերդում, Նոյեմբերյանում, Շամշադինում, Իջևանում և Ղափանում կարելի է նաև հոնի կորիզ հավաքել։

Սա դեռ բոլորը չէ։ Պիոներները բուսաբանության դասատուի, անտառաբույծի կամ գյուղատնտեսի ցուցումով ուրիշ տեսակների սերմեր էլ կարող են հավաքել։ Եթե հավաքածները պահպանելու մասին լրացուցիչ տեղեկությունների կարիք լինի, պետք է դիմել հենց նույն մասնագետներին։

Երևանի պիոներներն էլ կարող են բազմաթիվ ծառատեսակների սերմեր հավաքել. օրինակ՝ կանաչ և սովորական հացենու, ամերիկական թխկիի, սպիտակ ակացիի։ Այս ծառերն աճում են քաղաքը շրջապատող լանջերին ու պուրակներում։

Հավաքեցե՛ք ծառասերմեր, և որքան շատ՝ այնքան լավ։ Հավաքեցեք կոմունիզմի մեծ կառուցումներն ուղարկելու և մեր ռեսպուբլիկայի անտառազուրկ վայրերը ծառազարդելու համար։ Հավաքած սերմերը հանձնեցեք մոտակա անտառտնտեսություններին։

(Նկարը շապկի չորրորդ էջում)

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի նկարը՝ Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ




**„ПИОНЕР“**

№ 9

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, сентябрь, 1951 г. Ереван

*Խմբագրի պաշտոնակատար՝* **Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ**

*Խմբագրական կոլեգիա՝* ՍԻՄԱԿ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Գ. ԶԱԿՈԲՅԱՆ, Ս. ՕՀԱՆՅԱՆ, Վ. ԱՆԱՆՅԱՆ, Գ. ՍԵՎՈՒՆՑ, Վ. ՏԱԼՅԱՆ, Է. ՍԻՄՈՆՅԱՆ, ՀՐ. ԲԱՏԻԿՅԱՆ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 03070, Պատվեր 528. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ։ Արտադրության է հանձնված 17/VIII—51 թ.։ Ստորագրված է տպագրության 10/IX—51 թ.*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.։*




## ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆ

(Տիմոֆեյ)


Երեսունհինգ տարի առաջ հեռավոր Սիբիրում մեռավ անվեհեր ռևոլյուցիոներ Սուրեն Սպանդարյանը: Նա Լենինի և Ստալինի մեծ բարեկամն էր և մարտական զինակիցը, բոլշևիկյան պարտիայի նշանավոր գործիչը:

Սուրեն Սպանդարյանը ծնվել է 1882 թվականի դեկտեմբերի 16-ին Թբիլիսիում: Դեռ պատանի հասակում նա մասնակցում է



Անդրկովկասում ընկեր Ստալինի գլխավորած ռևոլյուցիոն շարժումներին: Սպանդարյանը սովորում էր ութերորդ դասարանում, երբ մտավ մեր պարտիայի շարքերը և իր ամբողջ կյանքը նվիրեց ցարական բռնակալության դեմ մղվող պայքարին:

1905 թվականի դեկտեմբերյան ապստամբության ժամանակ Սպանդարյանը Մոսկվայում զենքը ձեռքին կռվում էր բարիկադների վրա: Այդ օրերին շատ բանվորներ զոհվեցին: Սպանվեց նաև Սպանդարյանի մարտական ընկեր բանվոր Տիմոֆեյը: Այդ օրվանից էլ Սպանդարյանը իր ռևոլյուցիոն ծածկանունը դրեց Տիմոֆեյ ի նշան իրենց մեծ բարեկամության:

1912 թվականին ցարական ժանդարմները բանտարկեցին Սպանդարյանին և մի տարի հետո շղթայակապ ուղարկեցին հեռավոր Սիբիր: Այստեղ նա հանդիպեց աքսորում գտնվող Ստալինի հետ: Նրանց աքսորավայրերը հարյուրավոր կիլոմետր հեռու էին իրարից, բայց սիբիրյան սառնամանիքն ու հեռավորությունը, աքսորականի ծանր պայմանները չէին խանգարում, որ նրանք հանդիպեն իրար և շարունակեն ռևոլյուցիոն պայքարը:

Սպանդարյանը Լենինի և Ստալինի հետ պայքարում էր մեր պայծառ ապագայի համար, կոմունիզմի համար, և զոհվեց այդ մեծ պայքարի դիրքերում մինչև վերջ հավատարիմ մնալով ժողովրդին և Հայրենիքին:

## 26 ԿՈՄԻՍԱՐՆԵՐԸ


Սովետական Ռուսաստանի օգնությամբ 1917 թվականի նոյեմբերի 3-ին պրոլետարիատը Բաքվում Սովետական իշխանություն հռչակեց:

Մեր հայրենիքի ներքին թշնամիները վախենալով, որ շուտով ամբողջ Անդրկովկասը սովետական կդառնա, ստոր կապերի մեջ մտան գերմանական և թուրքական իմպերիալիստների հետ, նրանց թողեցին Անդրկովկաս և երկաթե օղակի մեջ առան Բաքվի կոմունան: Բաքվի աշխատավորությունը բոլշևիկների պարտիայի գլխավորությամբ հերոսաբար մարտնչեց թշնամիների դեմ: Լենինը և Ստալինը խրախուսում էին Բաքվի պրոլետարիատի պայքարը, օգնում նրան զինամթերքով և զորքով: Բայց այդ ժամանակ Իրանից դեպի Բաքու էին սողոսկում անգլիական գիշատիչ իմպերիալիստները:

Բաքվի կոմունան ժամանակավորապես ընկավ: Կոմունայի 26 հերոսական ղեկավարները. Լենինի, Ստալինի անվեհեր զինակիցներ՝ Շահումյանը, Ջափարիձեն, Ազիզբեկովը, Ֆիոլետովը և մյուսները բանտարկվեցին: Անգլիական դահիճները նրանց գնդակահարեցին Անդրկասպյան ավազուտներում:

«Մենք մեռնում ենք կոմունիզմի համար, կեցցե՛ կոմունիզմը»: Այս խոսքերը շուրթերին ընկան քսանվեց կոմիսարները:

Նրանց թափած արյունը իզուր չանցավ: Սովետական իշխանությունը հաղթեց Անդրկովկասում:

26 կոմիսարները ընկան կոմունիզմի մեծ գործի համար: Այժմ թուրքմենական ավազուտներում կառուցվում է գլխավոր թուրքմենական ջրանցքը: Դա անզուգական մի հուշարձան է 26 կոմիսարների համար:

## ԻՎԱՆ ՎԱԶՈՎ


Բուլղարիան տնքում էր թուրքական բռնակալների ծանր լծի տակ: Բայց բուլղար ժողովուրդը շարունակում էր պայքարել օտարերկրյա կեղեքիչների դեմ: Բուլղարիայի լավագույն զավակները գլխավորում էին այդ պայքարը: Դրանցից էր նաև բուլղարական մեծ գրող Իվան Վազովը:

Իվան Վազովը ծնվել է 1850 թվին Թրակիայի Սոպոտ քաղաքում: Դեռ պատանի հասակում նա տեսավ իր ժողովրդի ծանր վիճակը և իր բանաստեղծություններով երգեց նրա պայքարը օտարերկրացիների դեմ: Վազովի «Դրոշ և քնար», «Բուլղարիայի ցավերը» ժողովածուները բուլղար ժողովրդի սիրելի գրքերն են: Վազովը գրել է նաև պատմվածքներ, վիպակներ, պիեսներ և վեպեր:

Վազովն իր «Լծի տակ» հռչակավոր վեպը գրել է Ռուսաստանում: Նա շատ էր սիրում ռուս ժողովրդին և համոզված էր, որ Բուլղարիան կազատագրվի ռուս ժողովրդի օգնությամբ միայն: Եվ նա չէր սխալվում: 1878 թվին ռուսական զորքերը թուրքերին դուրս մղեցին Բուլղարիայից և օտար բռնակալների լծից ազատեցին բուլղար ժողովրդին:

Վազովը մեռավ 1921 թվի սեպտեմբերի 22-ին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՀԱՎԱՔԵՑԵՔ ԾԱՌԱՍԵՐՄԵՐ

